Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ
մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 51—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի սեպտեմբերի 13-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում: Պլենում էին հրավիրվել ՀԿԿ Կենտկոմի բաժինների վարիչներ, կուսակցության քաղկոմների, շրջկոմների առաջին քարտուղարներ, շրջկոմի իրավունքներով կուսկոմիտեների քարտուղարներ, մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ, որոնք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և վերստուգիչ հանձնաժողովի անդամ չեն, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործկոմների նախագահներ, խոշոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներ, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, գիտության, ժողովրդական կրթության, կուլտուրայի, մասսայական ինֆորմացիայի միջոցների, սովետական բանակի ներկայացուցիչներ:

Պլենումը քննարկեց «Էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում լճացման երևույթները հաղթահարելու և հանրապետությունում տիրող գաղափարաբարոյական մթնոլորտն առողջացնելու ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին. ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Մ. Ս. Մինասբեկյանը, ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի առաջին քարտուղար Յու. Հ. Ճշմարիտյանը, Կամոյի շրջանի «Գեղամա» արտադրական միավորման գործիքագործների բրիգադավար Պ. Ա. Աֆրիկյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, «Կոմունիստ» թերթի խմբագիր Բ. Մ. Մկրտչյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետագրոարդի նախագահ Վ. Մ. Մովսիսյանը, ՀԿԿ Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար Գ. Ն. Հասանովը, Հայաստանի գրողների միության վարչության նախագահ Հ. Կ. Հովհաննիսյանը, Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր Հ.Ս . Հարությունյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Մ. Լ. Մկրտչյանը, ՀԿԿ Կրասնոսելսկի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Ա. Նազինյանը, Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ Գ. Ա. Մարտիրոսյանը, Կալինինոյի շրջանի Լոռու տոհմաբուծարանի կթվորուհի Պ. Դ. Առաքելյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, հանրապետության պետշինի նախագահ Վ. Բ. Արծրունին, ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար Ս. Մ. Միխիթարյանը:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց որոշում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը Ռ. Ա. Արզումանյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ, Մ. Հ. Մուրադյանին՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղարի—ՀԿԿ Կենտկոմի շինարարության և քաղաքային տնտեսության բաժնի վարիչի և ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ, Դ. Ա. Հարությունյանին՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, Ք. Լ. Մանդալյանին՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուի և ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ ընտրեց Գ. Ա. Գալոյանին:

Պլենումը գաղտնի քվեարկությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամներ ընտրեց ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Մ. Ս. Մինասբեկյանին և ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Մ. Լ. Մկրտչյանին:

Պլենումը Ռ. Յա. Հակոբյանին հաստատեց ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ և գաղտնի քվեարկությամբ նրան ընտրեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը Վ. Հ. Մեհրաբյանին ազատեց ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության բաժնի վարիչի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, Ջ. Ա. Նունուշյանին՝ ՀԿԿ Կենտկոմի ընդհանուր բաժնի վարիչի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ, Ս. Մ. Խաչատրյանին՝ ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահի պարտականություններից՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ, Է. Ա. Արաքսման-Մանուկյանին՝ «Սովետական Հայաստան» թերթի խմբագրի պարտականություններից՝ այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Լ. Խ. Չախմախչյանին հաստատեց ՀԿԿ Կենտկոմի ընդհանուր բաժնի վարիչ, Հ. Ա. Օհանյանին՝ ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության հանձնաժողովի նախագահ, Ծ. Բ. Դավթյանին՝ «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ Գ. Պ. Խարչենկոն:

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅՈՒՄ, ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ ԼՃԱՑՄԱՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ՀԱՂԹԱՀԱՐՄԱՆ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԳԱՂԱՓԱՐԱԲԱՐՈՅԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌՈՂՋԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում 1988 թ. սեպտեմբերի 13-ին

*Ընկերներ:*

*Մեր պլենումը գումարվել է մեզ համար դժվարին ժամանակ: Հանրապետությանը բաժին են ընկել այնպիսի փորձություններ, որպիսիք նա չի իմացել շատ տասնամյակներ: Բանը ոչ միայն և նույնիսկ ոչ այնքան վերջին ամիսների հայտնի իրադարձություններն են: Ճգնաժամային իրավիճակը, որ այսօր ցավալի իրողություն է դարձել, սաղմնավորվել էր վաղուց, թվացյալ բարվոքության ու բարգավաճման ժամանակաշրջանում, երբ տարի առ տարի որոտընդոստ ծափահարությունների ներքո մեզ դրոշներ էին հանձնվում:*

*Անխռով թմբիրը, ինչպես դուք գիտեք, մեզանում շարունակվեց նաև 1985 թվականի ապրիլից հետո: Փթթում էին հանդիսամոլությունն ու ցուցամոլությունը: Համառորեն տարածվում էր այն միտքը, թե իբր, մեզ մոտ վերակառուցումն սկսվել է զգալիորեն ավելի վաղ, քան ամբողջ երկրում: Այնինչ իրադրությունը հանրապետությունում օրհասական էր, թերությունները կուտակվում էին կյանքի տառացիորեն բոլոր ոլորտներում:*

*Իրադրությունը վատթարանում էր էկոնոմիկայում: Շարունակաբար չէին կատարվում գիտատեխնիկական առաջադիմության պլանները, նվազում էր արտադրության արդյունավետությունը, ընկնում էր թողարկվող արտադրանքի որակը, շատ ձեռնարկություններ ֆինանսական ծանր կացության մեջ էին: Աճում էր մարդկանց սոցիալական անբավարարվածությունը: Չէր բարելավվում սննդամթերքի մատակարարումը բնակչությանը, և չէր բավարարվում ժողովրդական սպառման ապրանքների պահանջարկը: Անհանդուրժելի վիճակ էր ըստեղծվել բնակարանային հարցում, առևտրում, բժշկական, կենցաղային և կոմունալ սպասարկման, բնակչությանը խմելու ջուր մատակարարելու ասպարեզում: Սրվեցին էկոլոգիական պրոբլեմները:*

*Հանրապետությունում արմատներ էին արձակել այնպիսի այլանդակ երևույթներ, ինչպիսիք են սոցիալիստական սեփականության հափշտակումը, կաշառակերությունը, հովանավորչությունը, օրենքի նկատմամբ քամահրական վերաբերմունքը: Խախտվում էին սոցիալական արդարության սկզբունքները: Մարդկանց մի մասի մեջ տեղի էր ունենում սոցիալիստական արժեքների նըսեմացում, ահագնացել էր սպառողականության ալիքը: Ամենուրեք աճում էր ընդհանուր դժգոհությունը: Պակասում էին աշխատանքային ակտիվությունը,*

ների մեծացման բնագավառում բնական հնարավորությունների սահմանափակության գործոնի բացարձակացման վրա։ Արդյունքն ակներև է. բնակչության մեկ շնչի հաշվով սննդամթերքի արտադրությամբ մենք միջին միութենական մակարդակին զիջում ենք 1,8 անգամ, շարունակում ենք ընդհանուր միութենական ֆոնդերից հատկացվող դոտացիայի հաշվին ապահովել կաթի պահանջարկի երկու երրորդը և մսի ավելի քան 40 տոկոսը։ Եվ դա պատահական չէ, քանի որ վերջին երկու հնգամյակների ընթացքում գյուղատնտեսական մթերքների հավելաճի միջին տարեկան տեմպերը չեն գերազանցել 2 տոկոսը, աշխատանքի արտադրողականության տեմպերը՝ 1,8 տոկոսը։ Իսկ չէ որ այդ ճյուղում ներդրվել է շուրջ 3 միլիարդ ռուբլի։

Բնորոշ է, որ ագրոարդյունաբերական համալիրի կառավարման նոր մարմինների կազմավորումով վիճակը վատացավ։ Պարենային ծրագրով սահմանվածից շատ ցածր էին նախատեսված հացահատիկի, կաթի, կարտոֆիլի, պըտուղների, խաղողի, բոստանային կուլտուրաների արտադրության ու մթերման 12-րդ հնգամյակի առաջադրանքները։ Բայց նույնիսկ այս դեպքում էլ դըրանցից մի քանիսի գծով պլանները չեն կատարվում։ Եզրակացությունն այստեղ միակն է. ագրարային հատվածում տնտեսավարման մեխանիզմը ըստ էության փոխակերպվել է անտնտեսվարության մեխանիզմի։

Այսօր բնակչությունն անհանգստացած է անասնապահական մթերքների անբավարար մատակարարմամբ։ Մեզանում մեկ շնչի հաշվով մսի և մսամըթերքների սպառումը 24 տոկոսով ցածր է միջին միութենական մակարդակից։ Սննդի սահմանված նորմայից երկու անգամ պակաս է անարատ կաթնամթերքի սպառումը։ Մինչդեռ մենք հսկայական չօգտագործվող ռեզերվներ ունենք։ Յուրաքանչյուր չորրորդ տնտեսություն չի կատարում մսի հանձնման պլանը. այստեղ յուրաքանչյուր կովից շուրջ 30 տոկոսով պակաս կաթ է կթվում, քան հանրապետության միջինն է։ Անասնապահական համալիրների ու թռչնաֆաբրիկաների կարողությունները բեռնված են 60 տոկոսով։ Մի քանի հնգամյակ անընդմեջ մենք միջին հաշվով 100 կովից ստանում ենք 72—78 հորթ, յուրաքանչյուր 100 ոչխարից՝ 82—84 գառ, ինչը 14—18 տոկոսով ցածր է միջին միութենական ցուցանիշներից։

Շատ տարիներ շարունակ մեզ քննադատում են կերերի ցածր որակի, դըրանց պահպանման ու պատրաստման լուրջ թերությունների համար, իսկ դըրությունը այնպես էլ չի փոխվում։ Բարձիթողի վիճակում են բնական խոտհարքներն ու արոտավայրերը, որոնք օգտագործվում են ուղղակի բարբարոսաբար։ Ինչպես երևում է, այս ամենը քիչ է հուզում հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի ղեկավարությանը։

Անասնապահության մեքենայացման ծայրաստիճան ցածր մակարդակը, տարրական հարմարությունների բացակայությունը, հակասանիտարական վիճակը, աշխատանքի «պապենական» մոթոդները թույլ չեն տալիս բարձրացնել ֆերմաների մթերատվությունը, բարձրացնել անասնապահի մասնագիտության վարկը, գործի մեջ լայնորեն ներգրավել երիտասարդներին։ Կալինինոյի շրջանում, որտեղ ես եղա վերջերս, կթվորուհիների միջին տարիքը մոտենում է կենսաթոշակային հասակին։ Դրությունը ավելի բարվոք չէ նաև մի շարք այլ շրջաններում։

Մենք այսօր խնդիր ենք դնում. մոտ ապագայում առկա ռեզերվների և հընարավորությունների առավելագույն օգտագործման, ինտենսիվ գործոնների գերի էական ուժեղացման հիման վրա ոչ պակաս, քան 1,5—2 անգամ ավելացնել մեկ շնչին ընկնող հիմնական սննդամթերքների արտադրությունը, արդեն 1990 թվականին կաթի արտադրությունը 560 հազար տոննայից հասցնել 630 հազար տոննայի, մսինը՝ համապատասխանաբար 178 հազար տոննայից 205 հազար տոննայի։

Վիճակը լավ չէ նաև բնակչությանը բանջարեղենով ապահովելու գործում։ Մենք լուրջ հետևություններ չարեցինք այն բանից, որ անցյալ տարվա դեկտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմը անբավարար գնահատեց հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքը բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրությունն ավելացնելու և բնակչությանը դրանց մատակարարումը բարելավելու ուղղությամբ։ Պետական և կոոպերատիվ առևտրի միջոցով բանջարեղենի ու կարտոֆիլի վաճառքի ծավալը բնակչության պահանջմունքը բավարարում է ընդամենը կիսով չափ, պտղինը՝ մեկ քառոր-



դով։ Արմատացել է բանջարեղենի մթերումների պլանը բացառապես պոմիդո-
րի, սոխի, վարունգի ու կաղամբի հաշվին ապահովելու արատավոր պրակտի-
կան։ Մնացած 13 տեսակներին բաժին է ընկնում ոչ ավելի, քան 10 տոկոսը։
Սա բացահայտ աննորմալ վիճակ է, որը նպաստում է շուկայում գների բարձ-
րացմանը, տեղիք տալիս բնակչության արդարացի դժգոհության։
Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն վերջերս հատուկ քննության ա-
ռավ բանջարեղենով և կարտոֆիլով Երևանի բնակչության ապահովման վի-
ճակը։ Անբավարար համարվեց պետագրոարդի, Հայկոոպի վարչության, ավ-
տոտրանսպորտի մինիստրության, կուսակցության Երևանի քաղկոմի, Երքաղ-
սովետի գործկոմի, Երևանի և Արարատյան դաշտի կուսշրջկոմների ու շրջսո-
վետների գործկոմների աշխատանքը։ Զբաղեցրած պաշտոնից ազատվեց պետ-
ագրոարդի նախագահի տեղակալ Շ. Գևորգյանը։ Կենտկոմը այսուհետև էլ
շատ խիստ պատասխան կպահանջի բոլոր մակարդակների ղեկավարներից
սննդամթերքներով բնակչության ապահովման վիճակի համար։
Ագրոարդյունաբերական համալիրի կոմունիստները, աշխատողները մո-
տակա երկու տարում պետք է լիովին լուծեն բնակչությանը լայն տեսականու
ու բարձր որակի պտուղբանջարեղեն մատակարարելու պրոբլեմը։ Խանութները
պետք է տարին բոլոր և առանց խափանումների գնորդներին առաջարկեն կար-
տոֆիլ, բանջարեղեն ու մրգեր։
Բնականաբար, այս հարցի լուծման համար անհրաժեշտ է լրջորեն զբաղ-
վել մթերքների պահպանման համապատասխան կարողությունների ստեղծ-
մամբ։ Օրերս ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար
ընկ. Վ.Պ. Նիկոնովը մեր ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ հան-
րապետությունում գյուղատնտեսական արտադրանքի պահպանման ու վերա-
մշակման գործարկվելիք օբյեկտներում տիրող վիճակը ծայրահեղ լուրջ մտա-
հոգություն է հարուցում։ Ընթացիկ տարվա ութ ամսում շարք է մտել պտուղ-
բանջարեղենի պահեստների ընդամենը 20 տոկոսը։ Բայց չէ՞ որ դրանով ա-
պահովվածությունը մեզ մոտ կազմում է նորմատիվի ընդամենը 37 տոկոսը։
Ինչո՞վ բացատրել նման թերացումը։ Ամենից առաջ նրանով, որ երկրում ոչ մի
տեղ չի եղել գյուղական շինարարության այնքան չմտածված կազմակերպում,
որքան մեզ մոտ։ Գոյություն ունեցած ագրոշինը միայն ձևականորեն էր ագրո-
շին։ Դա համարյա կիսով չափ ծանրաբեռնվում էր ագրոարդյունաբերական
համալիրի հետ ոչ մի առնչություն չունեցող օբյեկտների շինարարությամբ։
Իսկ ինչ վերաբերում է գյուղական օբյեկտներին, ապա այդտեղ վերջին տասը
տարվա ընթացքում չեն իրացվել մոտավորապես 200 միլիոն ռուբլու կապի-
տալ ներդրումներ։ Մինիստրների խորհուրդը, պետպլանը և պետշինը պետք է
դասեր քաղեն թույլ տրված սխալներից և առաջնային նշանակություն տան
գյուղական շինարարությանը։
Պարենային պրոբլեմի լուծման մեջ առաջվա պես թերագնահատվում է
բնակչության անձնական տնտեսությունների, ձեռնարկությունների ու կազ-
մակերպությունների օժանդակ տնտեսությունների, կոլեկտիվ այգեգործության
ու բանջարաբուծության դերը։ Գյուղական ընտանիքների կեսից ավելին անա-
սուն չի պահում։ Մեզ մոտ մեկ ընտանիքի հաշվով օժանդակ տնտեսություն-
ներում 2,8 անգամ ավելի քիչ կաթ, 1,6 անգամ ավելի քիչ միս է արտադըր-
վում, քան միջին հաշվով երկրում։ Հանրապետությունում 1988 թվականին
անձնական օժանդակ տնտեսություններում 39 հազար գլուխ խոշոր եղջերա-
վոր անասուն պակաս կար, քան 30-ական թվականների վերջերին։ Գյուղա-
կան բնակիչը փաստորեն արտադրողից ըստ էության ինտենսիվորեն վերած-
վել է սպառողի։
Իսկ մենք որքան անխոհեմ վարվեցինք, ոչնչացնելով մեծ քանակությամբ
ջերմոցներ անձնական օժանդակ տնտեսություններում, փոխանակ դրանք
հմտորեն օգտագործելու բնակչության կարիքների բավարարման համար։ Վեր-
ջապես անհրաժեշտ է լուծել նաև տնամերձ հողամասերի ընդլայնման հարցը,
դրանք հասցնելով այնպիսի նորմաների, որոնք թույլ տան ամուր անձնական
օժանդակ տնտեսություններ ունենալ։
Բացահայտ շեղումներ են թույլ տրվել նաև կոլեկտիվ այգեգործության ու
բանջարաբուծության զարգացման մեջ։ Չի ապահովված անհրաժեշտ քանա-
կության հողամասերի հատկացումը, իսկ դրանց մի զգալի մասը կենտրոնաց-
ված է անհարմար վայրերում և մեծ կուտակումներով։ Տարրական պայման-

թյան հետևանքով կեղտաջրերի կենսաբանական մաքրման կառույցների շինարարության նորմատիվային ժամկետները ձգձգվում են 3—6 անգամ, իսկ շատ դեպքերում իսկույն ևեթ ի հայտ է գալիս գործարկված բնապահպանական համակարգերի անկատարությունը։

Մեզ խորապես հուզում է Սևանա լճի պրոբլեմը։ «Սևանա լճի պահպանության ուժեղացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1978-ին ընդունած որոշումը և հանրապետության կառավարության տասնյակ այլ որոշումներ փաստորեն մնացել են չկատարված։ Լճի էկոլոգիական կացությանը մեծ վնաս են հասցնում առափնյա գոտին առանց մաքրման շինությունների կառուցապատելը, նրա ջրային ռեսուրսների հանցավոր, վատնողական օգտագործումը և նման շատ վրիպումներ։

Դեռևս ուշ չէ և հնարավոր է փրկել Սևանը։ Բայց վաղը կարող է կատարվել անուղղելին։ Հենց այս ըմբռնմամբ մենք պետք է արագացնենք Որոտան գետից տարեկան 165 միլիոն խորանարդ մետր ջրի հոսքափոխման կառուցվածքների գործարկումը, ինչպես նաև իրականացնենք Հոկտեմբերյանի, Հերհերի և այլ ջրամբարների շինարարությունը և միաժամանակ վերակառուցենք Հրազդանի ոռոգման ցանցը։ Դրանով մենք կկրճատենք ջրի բացթողումը Սևանա լճից և կբարձրացնենք նրա մակարդակը։

Անթույլատրելիորեն ձգձգվել է Սևանա լճի շուրջը օղակաձև կոյուղային կոլեկտորի շինարարությունը։ Դժվար է գերագնահատել այդ կառուցվածքի կարևորությունը լճի հետագա աղտոտումը կանխելու համար։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Մինիստրների խորհուրդը վերջին ժամանակներս մի շարք միջոցներ են ձեռնարկել կոլեկտորի շինարարությունը 1990 թվականին ավարտելու և առափնյա բոլոր բնակավայրերը դրան միացնելու համար։ Միաժամանակ պետագրոարդը պետք է վերանայի գյուղատնտեսական արտադրության վարման սխեման՝ հաշվի առնելով հանքային պարարտանյութերի և թունաքիմիկատների կիրառման շեշտակի կրճատումը։ Հարկավոր է կատարել արդյունաբերական արտադրության՝ լիճ թափվող մնացուկների բազմակողմանի քննություն։ Եթե չգտնվեն վնասակար թափոնների բացառման ուղիներ, մենք հարկադրված կլինենք արգելել բոլոր օբյեկտների աշխատանքը մինչև կոլեկտորի շինարարությունն ավարտվելը։ Լճի պահպանության հետ կապված օբյեկտների կառուցումը մենք պետք է հայտարարենք հանրապետության հարվածային ժողովրդական կառույց:

Մենք նոր վերաբերմունք ունենք նաև Հայկական ատոմային էլեկտրակայանի նկատմամբ։ Անկեղծ լինենք, այն անհեռատես տեխնաքաղաքականության արգասիք է։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը միութենական մարմինների առջև գործող էներգաբլոկները շահագործումից հանելու հարց է դրել այն հաշվով, որ արդեն առաջիկա երեք տարում ատոմայականը փակվի։ Հանրապետության առաջարկությունը ըմբռնում և պաշտպանություն է գտել ՍՄԿԿ Կենտկոմում և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում։ Այս հարցով վերջերս մեզ մոտ էր գտնվում մի հատուկ հանձնաժողով՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Բ. Ե. Շչերբինայի գլխավորությամբ։ Հանձնաժողովի կազմի մեջ էին մի շարք միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ, խոշոր գիտնականներ ու մասնագետներ։

Ատոմային էլեկտրակայանի փակումը բարդ ու մասշտաբային խնդիր է: Սակայն մենք այն պետք է լուծենք մինչև վերջ, որովհետև դա համահունչ է ժողովրդի իղձերին: Հայկական ատոմային էլեկտրակայանը կփակվի':

Կարող են հարց տալ՝ իսկ ինչո՞ւ ենք մենք ատոմակայանը փակում երեք տարի հետո։ Բանն այն է, որ այսօր ատոմակայանը տալիս է հանրապետությունում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի 36 տոկոսը, և մենք պետք է կարողությունները լրացնելու համար Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում գործարկենք 300 մեգավատ կարողությամբ նոր չորս էներգաբլոկ։ Արդեն ձեռնարկվում են այդ աշխատանքներն արագացնելու բոլոր միջոցները։ Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանում նոր էներգաբլոկների կառուցումն ու գործարկումը պետք է շրջապատված լինեն համաժողովրդական հոգածությամբ։ Նախատեսվում է նաև ատոմակայանի շենքերն ու շինությունները վերասարքավորել բնական գազով աշխատող ջերմաէլեկտրակայանի համար։



Այն կապակցությամբ, որ հանրապետությունում ձայներ են հնչում, թե իբր առաջիկայում մեզ մոտ ստեղծվելու են նոր ատոմային կարողություններ, նույնիսկ մատնանշվում է դրանց տեղաբաշխման վայրը, ես այսօր ամենայն պատասխանատվությամբ հայտարարում եմ. հանրապետության ոչ մի վայրում ատոմային օբյեկտների շինարարություն չի լինի։ Կուզենայի հատկապես դիմել ատոմակայանի կոլեկտիվին՝ մինչև փակումը մնացած ժամանակամիջոցում հարկավոր է աշխատել ավելի համերաշխ ու հստակ, բարձր գիտակցականությամբ ու ժողովրդի հանդեպ պատասխանատվության զգացումով։

Էկոլոգիական իրադրության կարգավորման նպատակով ավելի ակտիվորեն կօգտագործվեն փոքր գետերի, արևի, քամու, ընդերքի ջերմային էներգիան։ Շատ էական է նաև խիստ խնայողաբար ծախսել էներգետիկ ռեսուրսները։ Այս ուղղությամբ պետք է կենտրոնացվեն գիտատեխնիկական ու ինժեներակոնստրուկտորական միտքը, տնտեսական ղեկավարների ջանքերը։

Մեր պարտքն է արմատապես փոխել վերաբերմունքը շրջակա միջավայրի նկատմամբ, հանրապետության աշխատավորների մեջ դաստիարակել էկոլոգիական բարձր կուլտուրա, վճռականորեն արմատախիլ անել էկոլոգիական նորմաների ու կանոնների խախտումների նկատմամբ ձեռնարկությունների որոշ ղեկավարների անտարբեր վերաբերմունքի փաստերը։ Մենք չպետք է այս կենսականորեն կարևոր բնագավառում պրոբլեմները լուծենք փորձելու և սխալվելու մեթոդով։ Այսօր մեզանից պահանջվում է խորապես գիտական, կշռադատված քաղաքականություն վարել էկոլոգիական կայուն հավասարակշռության, էկոլոգիական համակարգի բոլոր տարրերի բնական վերարտադրության ապահովման հետ կապված հարցերում։

Հասունացել է անհրաժեշտությունը հանրապետությունում մշակելու հեռանկարային, բազմակողմանիորեն հիմնավորված բնապահպանական ծրագիր, որը հենվի երկարաժամկետ սոցիալ-տնտեսական զարգացման ընդհանուր կոնցեպցիայի վրա: Այդ աշխատանքին պետք է մասնակից դառնան պետպլանը, շրջակա միջավայրի պահպանության պետական կոմիտեն, գիտությունների ակադեմիան, հանրապետության մինիստրություններն ու գերատեսչությունները, և, իհարկե, մեր հասարակայնությունը, որին կցանկանայինք երախտագիտություն հայտնել էկոլոգիական իրադրության առողջացման հետ կապված հարցերի առաջադրման գործում հանդես բերած հաստատակամության ու ակտիվության համար։

## ԳԱՂԱՓԱՐԱԲԱՐՈՅԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐՄԱՏԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՑՈՒՄԸ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆ Է

Ընկերներ։

Վերջին տասնամյակում հանրապետությունը դիրքերը զիջել է ոչ միայն սոցիալ-տնտեսական զարգացման, այլև գաղափարախոսության, հոգևոր կյանքի ասպարեզում։ Լճացման ժամանակաշրջանի «լավագույն» ավանդույթներով ջանադրաբար ուռճացվում էր հանրապետության իբր բուռն բարգավաճման առասպելը, մինչդեռ իրականում ձևախեղվում ու նենգափոխվում էին բարոյական արժեքները և կողմնորոշիչները։ Բուռն ու երկարատև ծափահարությունների մեջ խեղդվում էր աշխատավորության, ստեղծագործական ու գիտական մտավորականության տագնապալից ձայնը։ Ինքնագոհության այսպիսի մթնոլորտում, երբ չէին նկատվում, հետևաբար նաև չէին կասեցվում բացասական երևույթները, շեշտակիորեն նվազել էր գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունը, ամլացել դրա հարձակողական, գրոհող էությունը։

Այդ բանը բազմիցս մատնանշել էր ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն։ Բայց մեր կուսակցության Կենտկոմի 1984 թվականի հոկտեմբերի 17-ի և 1986 թվականի օգոստոսի 12-ի որոշումներում նշված գաղափարախոսական աշխատանքի լուրջ թերությունները և վրիպումները չէին վերացվում։ Առաջին որոշման էությունը հանգեցվեց նրա կոնտեքստից պոկված այն արտահայտությանը, թե հանրապետությունում առկա է առողջ բարոյաքաղաքական մթնոլորտ։

Հենց այդ ձեռնտու արտահայտության շուրջն էլ կառուցվեց ամբողջ գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքը։ Իսկ երկրորդ փաստաթուղթը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հասցեին արված անաչառ և սուր քննադատությամբ հանդերձ, այնպես էլ գաղտնիք մնաց հանրապետության կոմունիստների համար։ Տարբեր աստիճանի կուսակցական կոմիտեները ընդունում էին որոշումներ, կազմում միջոցառումների պլաններ ի կատարումն մի որոշման, որի բովանդակությանը շատ քչերն էին ծանոթ։

Անտեղյակությունը կույր հավատ է ծնում։ Ահա թե ինչու որոշ մարդիկ խիստ անակնկալի եկան ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի ամբիոնից տրված արդարացի քննադատությունից։ Այդ քննադատությունը լսթափեցրեց նրանց, ում մոլորեցրել էին ողջերթերը, փոխանցիկ դրոշների շըրշյունը, առույգ զեկույցները։ Աշխատավորների վատթարագույն սպասելիքները հաստատվեցին. հանրապետությունը հայտնվեց վերակառուցման ճամփեզրին, փոփոխությունների կենարար հովերը շրջանցում էին Հայաստանը։

Սոցիալ-տնտեսական և քաղաքական ոլորտներում տեղի ունեցած ձևախեղումները խոր հետք թողեցին ինչպես առանձին մարդկանց բարոյական կերպարի, այնպես էլ ամբողջ հասարակության բարոյական վիճակի վրա։ Ուստի մեր գործունեության կարևորագույն ուղղություններից մեկը պետք է դառնա հանրապետության կյանքի բոլոր ոլորտների առողջացումը, դրանց մաքրումը այն ամենից, ինչը խորթ է սովետական ապրելակերպին։ Մենք երկար տարիներ մեր ինքնասիրությունը շոյում էինք հանրապետության առողջ բարոյաքաղաքական մթնոլորտի պատրանքով, բայց մարդիկ տեսնում էին, թե ինչպես է ճաք տվել օզոնի շերտը, որն արդեն գրեթե ընդունակ չէր պաշտպանելու մեր կյանքը ամեն տեսակ բարոյական խեղաթյուրումներից։

Մեզանում հենց բարոյական մթնոլորտը դարձավ ամենաաղտոտվածներից մեկը։ Բարոյական զարգացման որոշ ուղղություններում մենք ոչ միայն չկարողացանք ամրապնդել նվաճված դիրքերը, այլև նույնիսկ նահանջեցինք, ազատություն տալով մանրբուրժուական դրսևորումներին։ Տարածում գտան սոցիալիստական սեփականության հափշտակումները, կաշառակերությունը, «ստվերային էկոնոմիկան», ամենաթողությունը, սպեկուլյացիան, հովանավորչությունը, աչքակապությունը, հավելագրումները, սոցիալական արդարության սկզբունքների խախտումները։ Այս ամենը մեթոդաբար խարխլում էր բարոյական հիմքերը, կործանարար ազդեցություն գործում հանրապետության բարոյական կլիմայի վրա՝ հարուցելով նրա առողջ ուժերի օրինական վրդովմունքը, առաջացնելով սոցիալական անտարբերություն, սասանելով ղեկավար կադրերի հեղինակությունը, անվստահություն սերմանելով պաշտոնական խոսքի նկատմամբ։

«Դրա անխուսափելի հետևանք եղան,— նշել է Մ. Ս. Գորբաչովը,— հասարակական գործերի նկատմամբ հետաքրքրության անկումը, հոգևոր սնանկության և հոռետեսության դրսևորումները, աշխատանքի բարոյական խթանների դերի նվազումը։ Ավելացավ այն մարդկանց խավը, այդ թվում՝ երիտասարդության շրջանում, որոնց համար կյանքի նպատակը հանգում էր նյութական բարեկեցությանը, բոլոր միջոցներով հարստություն դիզելուն։ Նրանց ցինիկ դիրքորոշումը ավելի ու ավելի ռազմատենչ ձևեր էր ստանում, թունավորում շրջապատի մարդկանց գիտակցությունը, սպառողականության ալիք ծնում»։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի այս խոսքերը շատ ճիշտ են բնութագրում նաև մեր հանրապետությունում ստեղծված տագնապալից գաղափարաբարոյական մթնոլորտը։

Եկեք չիտակ նայենք ճշմարտությանը։ Վերջին տասը տարում, օրինակ, հանրապետությունում սոցիալիստական սեփականության հափշտակումները ավելացել են մոտավորապես վեց անգամ։ Ժողովրդական տնտեսության մեջ վնասներն ու կորուստները մեծացել են ավելի քան երեք անգամ։ Բացասական երևույթները հոգևոր աղքատության շղթայական ռեակցիա առաջացնելով, թափանցել են հասարակական օրգանիզմի գրեթե բոլոր բջիջները, թաքուն տարածվել բոլոր սոցիալական խավերում, գործունեության բոլոր ոլորտներում։

Հանրապետության աշխատավորները առևտրի, հասարակական սննդի, կենցաղի ծառայության, տրանսպորտի, կապի, բնակարանային-կոմունալ տնտեսության, առողջապահության, լուսավորության հիմնարկ-ձեռնարկություն-



ներում բախվում են խաբեության, սպեկուլյացիայի, դրամաշորթության, կոպտության արգահատելի փաստերի, բացասական այլ երևույթների։ Այդ ոլորտներում զբաղված մի քանի հազար մարդիկ անմիջականորեն կապված են Հայաստանի ամբողջ բնակչության հետ, և նրանց աշխատանքով, նրանց բարոյական կերպարով են մեծապես պայմանավորված ոչ միայն մարդկանց տրամադրությունը, այլև հանրապետության ամբողջ բարոյական կլիման։ Իսկ չէ որ միայն աշխատավորների սոցիալական ու բարոյական ինքնազգացողության, նրանց հոգեվիճակի նկատմամբ կուսակցական կոմիտեների մշտական ուշադրությունը կարող է դրական արդյունքներ տալ ինչպես արտադրության մեջ, այնպես էլ հանրապետությունում առողջ բարոյական մթնոլորտի ստեղծման գործում։ Ուստի մարդկանց կյանքի ու կենցաղի հետ անմիջականորեն կապված աշխատավորական կոլեկտիվներում բարոյական դաստիարակությունը պետք է առանձնանա առանձնահատուկ խստապահանջությամբ, հետևողականությամբ ու խորությամբ։

Հանրապետության բարոյական առողջացումն անհնար է պատկերացնել առանց կուսակցականի անաղարտ և ազնիվ կերպարի հաստատման։ Առողջ բարոյաքաղաքական մթնոլորտի ստեղծման, բարոյականության վեհ սկզբունքների հաստատման ասպարեզում առանձնապես նշանակալից դեր ունեն կոմունիստի, ղեկավարի անձնական օրինակը, նրա այնպիսի հատկանիշները, ինչպիսիք են անբասիր ազնվությունը, սկզբունքայնությունը, անձնական համեստությունը։ Ոչինչ այնքան բացասական ներգործություն չի ունենում, այնքան այլասերիչ ազդեցություն չի գործում շրջապատի վրա, որքան ամենաթողությունը, ղեկավարի անպատիժ մնացող անվայել վարքը։

Մտահոգում է նաև մի այսպիսի փաստ. հանրապետությունում երկար տարիներ շարունակ չի պակասում հանրային արտադրության մեջ չզբաղված աշխատունակ բնակչության թիվը։ Մեր հասարակության մեջ աշխատունակ, բայց չաշխատող մարդկանց առկայությունը տնտեսական աճի չօգտագործված ռեզերվ չէ միայն։ Դա բացասական ազդեցություն է գործում, անբարենպաստ դաստիարակչական ֆոն ու պարարտ հող է ստեղծում ամեն կարգի մերժելի երևույթների համար։

Այս ամենը պետք է մտահոգի հանրապետության յուրաքանչյուր ազնիվ քաղաքացու, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, մեզ բոլորիս։ Մենք պետք է, մենք պարտավոր ենք արմատախիլ անել այդ երևույթները։ Այս մասին բազմիցս խոսվել է բարձր ամբիոններից, բայց վիճակն ավելի ու ավելի է վատացել։ Եվ վատացել է այն պատճառով, որ բարոյական դաստիարակությունը չի ամրապնդվել կոնկրետ գործերով ո՛չ էկոնոմիկայի, ո՛չ սոցիալական ոլորտներում, ո՛չ էլ հենց գաղափարախոսական աշխատանքում։

Թվարկված փաստերը չէին լինի, եթե կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, գաղափարախոսական հիմնարկները, վարչական մարմինները հանդես բերեին ավելի շատ սկզբունքայնություն, անհանդուրժողության մթնոլորտ ըստեղծեին մեր բարոյախոսության սկզբունքներից կատարվող ամեն տեսակ շեղումների նկատմամբ, եթե նրանք չբավարարվեին կիսամիջոցներով, պայքարեին ոչ միայն առանձին բացասական երևույթների, այլև դրանք սնուցող արմատների համակարգի դեմ։

Հրապարակայնությունը ապաքինում է, հաստատում հոգևոր վեհ սկզբունքներ։ Մեր հասարակությունը հակաբարոյական ամեն տեսակ դրսևորումներից կարող է մաքրվել միայն բացեիբաց դատապարտելով դրանք, հականեհանվանե հիշատակելով չարիքի կոնկրետ կրողներին։ Ուստի բարոյական կլիմայի առողջացման աշխատանքում մենք պետք է լայնորեն հենվենք հասարակայնության ուժի վրա, հաշվի առնենք մի այնպիսի կարևոր գործոն, ինչպիսին հասարակական կարծիքն է։ Անհրաժեշտություն է դարձել, ընկերներ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմում ստեղծել հասարակական կարծիքի ուսումնասիրման ու կանխատեսման մշտապես գործող ծառայություն։ Ընդ որում, անչափ կարևոր է, որ այդ ուսումնասիրությունների արդյունքները լայնորեն հրապարակվեն, քննարկվեն կոլեկտիվներում և օգտագործվեն գործնական աշխատանքում, այդ թվում նաև կադրային հարցերը լուծելիս։

Ժամանակն է նախնական իմաստը վերադարձնել այնպիսի սուրբ հասկացությունների, ինչպիսիք են պարտքը, պատասխանատվությունը, խիղճը, օրինավորությունը։ Ժամանակն է բոլոր միջոցներով վճռական պայքար ծավալել այն ամենի դեմ, ինչը աղավաղում է սոցիալիզմի իսկական, մարդկային դեմքը, մեր հանրապետության դեմքը, մանավանդ որ վերակառուցման, դեմոկրատացման և հրապարակայնության պրոցեսները, սոցիալ-տնտեսական նոր քաղաքականության իրականացումը ամենաբարենպաստ պայմաններն են ստեղծում գաղափարադաստիարակչական արդյունավետ աշխատանքի համար։ Մենք վստահ ենք, որ դրան կնպաստեն նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կողմից նախատեսվող միջոցառումները՝ ուղղված հանրապետության բարոյաքաղաքական կլիմայի առողջացման, հանրապետությունը ոչ միայն սոցիալ-տնտեսական, այլև, ինչ թաքցնենք, բարոյական ճգնաժամից դուրս բերելու նպատակին։

Անհրաժեշտ է հաշվի առնել, որ մեզանում կան հակավերակառուցողական ուժեր, որոնց սրտովը չէ Կենտրոնական կոմիտեի սկսած առողջացման կուրսը։ Քողարկվելով բարձրագոչ խոսքերով և չարաշահելով մարդկանց ազնիվ զգացմունքները, նրանք ուզում են պառակտել մեր շարքերը, հանրապետությունում քաոս առաջացնել, ամեն կերպ ջանում են բորբոքել կրքերը, մարդկանց պահել լարված վիճակում։ Երևանում անցկացվող միտինգներում հաճախ հնչում են այնպիսի հայտարարություններ, որոնք ոչ միայն զուրկ են դեմոկրատական հարաբերությունների կուլտուրայից, այլև բովանդակում են կոպիտ հարձակումներ, անձնական վիրավորանքներ։

Միտինգներում երբեմն նաև արդարացի հանդիմանություններ են արվում հանրապետությունում ստեղծված անբարեհաջող իրադրության առնչությամբ։ Բայց հանդիմանելը, քննադատելը քիչ է, հարկավոր է նաև գործնականորեն մասնակցել նորացման պրոցեսին։ Մենք ձեռք ենք մեկնում բոլոր ազնիվ մարդկանց և ասում. եկեք ընկերներ, գործենք համատեղ, վերակառուցման պլատֆորմի վրա։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը դիմում է բոլոր քաղաքացիներին, բոլոր նրանց, ովքեր իրոք մտահոգված են հայ ժողովրդի ճակատագրով, հանրապետության ճակատագրով, երկրի ճակատագրով, կոչ անելով համախմբել ջանքերը, միավորվել լուծելու կենսականորեն կարևոր այն խնդիրները, որ ամենայն սրությամբ ծառացած են հանրապետության աշխատավորության առջև։

Մենք վկա ենք մարդկանց հասարակական ակտիվության աննախադեպ աճի։ Եվ այստեղ կարևոր է ճիշտ կողմնորոշվել, այդ եռանդը նպատակամղել պիտանի, ժողովրդի իսկական շահերին համապատասխանող գործերի իրականացմանը։ Այսօր հասարակայնության շրջանում շահագրգիռ քննարկվում է այնպիսի ընկերության ստեղծման հարցը, որը կոչված լինի աջակցություն ցույց տալու նորացմանը նպատակամղված կուսակցության կուրսին, նպաստելու հանրապետության աշխատավորների առջև կանգնած մի շարք կենսականորեն կարևոր հարցերի լուծմանը։ Նման ասոցիացիայի կամ ընկերության ստեղծման բուն գաղափարը, անտարակույս, արժանի է ուշադրության։ Դա կարող է լինել կամավոր ընկերակցություն, որը վերակառուցման, ոգեղենության ու մարդասիրության պլատֆորմի վրա կմիավորեր ինչպես առանձին քաղաքացիների, այնպես էլ հասարակական կազմակերպությունների։ Նրա գործունեության մեջ կարող էին զուգորդվել հայրենասիրական, մշակութային, լուսավորչական, բարեգործական նպատակները։

Այդ ընկերակցությունը կարող էր զբաղվել հայ ժողովրդի մշակութային ժառանգության ուսումնասիրմամբ ու մասսայականացմամբ ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս, մեր պատմության հուշարձանների պահպանմամբ, կնպաստեր հայագիտական տարբեր ուղղությունների զարգացմանը, ժողովրդի պատմության «սպիտակ բծերի» վերացմանը, հայոց լեզվի և ազգային-ռուսական երկլեզվության զարգացմանը, էկոլոգիական պրոբլեմների լուծմանը։

Որքա՞ն ասես օգտակար գործեր կարող էր կատարել այդպիսի ընկերությունը։ Մենք աշխատանքի անսպառ ասպարեզ ունենք, և առանց ժողովրդի բոլոր առողջ ուժերի համախմբման և նրա կողմից մեզ ցույց տրվող լայն աջակցության, իհարկե, գործը գլուխ բերել չենք կարող։



Ընկերներ։ Մեր ժամանակը՝ սոցիալ-քաղաքական խոր վերափոխումների, դեմոկրատիայի ու հրապարակայնության աննախադեպ զարգացման ժամանակը, ի հայտ է բերում մեծաթիվ բարդ պրոբլեմներ ազգամիջյան հարաբերությունների ոլորտում, որոնք գոյություն ունեին նաև առաջներում, բայց անհատի պաշտամունքի ու լճացման տարիներին գտնվում էին լռության գոտում։ Դրանցից է Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը։

Այո՛, այդ պրոբլեմը առաջացել է ոչ այսօր և ոչ դատարկ տեղում։ Դրա արմատները սկիզբ են առնում պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական գործոնների բարդ միահյուսումից, անցյալում ազգային քաղաքականության խեղաթյուրումներից։ Ինքնավար մարզում երկար ժամանակ չէին լուծվում հայ բնակչության ազգային զգացմունքներն ու շահերը շոշափող կարևոր շատ հարցեր, առանձնապես մշակույթի, կրթության ոլորտում, կադրային քաղաքականության մեջ։ Խախտվում էին ինքնավար մարզի սահմանադրական իրավունքները։ Այս կենսական պրոբլեմները կուտակվում էին տասնամյակներ շարունակ, չստանալով ոչ միայն անհրաժեշտ լուծում, այլև նույնիսկ հրապարակային ճանաչում։

Վերակառուցումը, դեմոկրատացումը և հրապարակայնությունը ի հայտ բերեցին դրանք, հնարավորություն տվեցին բացեիբաց վերլուծել ու քննարկել հիվանդագին պրոցեսները, որոնել պրոբլեմների լուծման ուղիներ։ Այդ ամենի սուր արտահայտությունը եղան այս տարվա փետրվարի իրադարձությունները Լեռնային Ղարաբաղում, մասսայական ցույցերը, միտինգներն ու գործադուլները Երևանում, հանրապետության մի շարք ուրիշ քաղաքներում ու շրջաններում՝ ի պաշտպանություն Ադրբեջանական ՍՍՀ կազմից ինքնավար մարզը դուրս բերելու Լեռնային Ղարաբաղի հայ բնակչության պահանջի։

Սակայն դեմոկրատական իրավունքներն ու նոր պայմանները, որ կյանքի կոչեց վերակառուցումը, որոշ անձինք սկսեցին օգտագործել բացահայտ հակադեմոկրատական նպատակներով։ Տեղի ունեցան ձեզ հայտնի հակաիրավական գործողությունները։ Այդ ամենը ամիսներ շարունակ ջլատեց հանրապետությունը, ցնցեց նրա էկոնոմիկան, լուրջ վնաս հասցրեց նրա հեղինակությանը։

Մեզ համար դժվարին օրերին Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորներին, ժողովուրդներին դիմեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը։ Այդ դիմումը ճիշտ ժամանակին էր և հսկայական օգնություն ցույց տվեց հանրապետության կուսակցական կազմակերպություններին՝ իրադրությունը կայունացնելու, ճգնաժամային վիճակից դուրս գալու գործում։ Առավել ևս, որ Լեռնային Ղարաբաղում և նրա շուրջը տեղի ունեցած իրադարձությունների առաջին օրերից կուսակցական շատ կոմիտեներ և կազմակերպություններ հայտնվեցին կողմնակի, պասիվ դիտողի աննախանձելի դերում։ Վերջին ամիսների փորձը մեզ համոզում է, որ իրադրությունը էապես փոխող դեմոկրատացման և հրապարակայնության պայմաններում կուսակցական, սովետական, գաղափարախոսական կադրերը պետք է կարողանան գործել բարդ, ոչ սովորական, իսկ երբեմն էլ կոնֆլիկտային իրավիճակներում, պետք է կարողանան անմիջական բանավեճ վարել։ Մեր շատ կադրեր, ցավոք, այդ ծայրաստիճան դժվարին իրավիճակում սնանկ դուրս եկան, նաև պարզապես շփոթության մատնվեցին, նահանջեցին սկզբունքային դիրքերից։ Եվ դա այն ժամանակ, երբ միտինգներում առանձին անձինք, իրենց իրավունք վերապահելով խոսել հայ ժողովրդի անունից, իրենց հայտարարություններով ու պահանջներով ոտնահարում էին ժողովրդի ամենանվիրական զգացմունքները՝ նվիրվածություն սոցիալիզմին, եղբայրական բարեկամություն ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ։

Իսկ մեր ակտիվիստներից, սովետական ու տնտեսական ղեկավարներից, գաղափարախոսական աշխատողներից արդյոք քանի՞սը հանդես եկան այդ ամենի հրապարակային դատապարտմամբ։ Ո՞վ հակահարված տվեց նման հայտարարություններին, կոչերին և գործողություններին, որոնք ստվեր են գցում հայ ժողովրդի բարի համբավի վրա։ Ցավոք, քչերը։ Կասեմ ավելին, իրենց բարձրության վրա չգտնվեցին նաև մեր ընտրովի կուսակցական ակտիվի մի զգալի մասը, նրանք, ովքեր կոմունիստի, կուսակցականի պարտքի բերումով պարտավոր էին այդ պայմաններում դրսևորել կամք, խոր համոզվածություն, աշխատավորներին տանել իրենց հետևից։

Հարց է ծագում, ինչպե՞ս կարող էր այդ ամենը տեղի ունենալ։ Ի՞նչը շարժման մեջ դրեց ժողովրդի զանգվածներին, ի՞նչ արգելակող մեխանիզմ կաշկանդեց կուսակցական շատ կազմակերպությունների կամքը, նրանց դատապարտեց պասիվության և անգործության։

Անշուշտ, մենք դեռ պետք է ուսումնասիրենք կատարվածը, որպեսզի անհրաժեշտ դասեր քաղենք դրանից։ Սակայն նախնական արդյունքները կարելի է ամփոփել արդեն այսօր։ Պետք է բացեիբաց խոստովանել, որ, ցավոք, պատշաճ մակարդակի վրա չգտնվեցին աշխատավորների, նաև կոմունիստների որոշակի մասի քաղաքական գիտակցությունը, քաղաքական կուլտուրան։ Ասենք, մեր մտավորականության որոշ ներկայացուցիչներ էլ ոչ միշտ էին ակտիվորեն նպաստում իրադրության կարգավորման պրոցեսին, իսկ երբեմն էլ թույլ էին տալիս անգամ անխոհեմ գործողություններ։

Պետք է խոստովանել, որ մենք դեմոկրատիան, դրա առաջին դասերը ընկալել ենք, ասենք, այսօր էլ ընկալում ենք չափից ավելի միակողմանի ու մակերեսորեն, մոռանալով, որ դեմոկրատիան ենթադրում է ոչ միայն իրավունքներ, այլև պարտականություններ։ Պարտականություններ պետության հանդեպ, հասարակության հանդեպ, սեփական ժողովրդի հանդեպ։

Կայուն աշխարհայացքային իմունիտետի մշակումը գաղափարախոսական աշխատանքի գլխավոր խնդիրներից է։ Սակայն այդ կարևորագույն բնագավառում քիչ չեն լուծում պահանջող պրոբլեմները։ Դրա պատճառները շատ են, և առաջինը այն մի շարք գործոնների թերագնահատումն է, որոնք ձևավորում են ազգային բնութագիր, անհատի սոցիալական տիպ, մարդկանց մեջ մշակում ակտիվ կենսադիրք, դասակարգային մոտեցում հասարակական կյանքի երևույթների ու իրադարձությունների նկատմամբ։

Վերցնենք, օրինակ, քաղաքական գիտակցության մի այնպիսի կարևոր գործոն, ինչպիսին է մարդու վերաբերմունքը աշխատանքի՝ որպես անհատի սոցիալական վարկի գլխավոր չափանիշի հանդեպ։ Եկեք խորհենք, ընկերներ. մենք արդյոք չե՞նք կորցնում դարերի ընթացքում մշակված, մեր օրերում նոր, սոցիալիստական բովանդակությամբ հարստացած և մեր ժողովրդի պարծանքը հանդիսացող աշխատասիրությունը, արարման, ստեղծագործության նրա դարավոր ձգտումը։ Այսօր էլ մենք հիանում ենք մեր բանվոր դասակարգով, գյուղացիությամբ, մտավորականությամբ։ Սակայն ինչո՞վ բացատրել, օրինակ, մեզ մոտ լայնորեն տարածված աշխատանքային, արտադրական կարգապահության խախտումները, անորակ արտադրանքի թողարկման փաստերը, խոտանարարությունը։

Հապա գործադուլնե՞րը։ Չէ՞ որ երբեմն գործադուլների կոչեր էին անում կյանքում երբեք չաշխատած պատանիներ, որոնք չգիտեն էլ, թե ինչ բան է իսկական աշխատանքը։ Եվ, որ առանձնապես ցավալի է, նրանց անպատասխանատու կոչերին երբեմն հնազանդվում էին նույնիսկ աշխատանքի վետերանները, վաստակած, փառաբանված մարդիկ։ Ի դեպ, նրանք շաբաթ ու կիրակի օրերը աշխատելով արտաժամյա, այժմ ձգտում են վերականգնել բաց թողածը, լրացնել կորուստները։ Անշուշտ, այդ կորուստները կլրացվեն, բայց ահա գործադուլների հասցրած բարոյական վնասը դեռ երկար ժամանակ կհետապնդի մեզ։

Լեռնային Ղարաբաղում և նրա շուրջը տեղի ունեցած իրադարձությունները հանգեցրին ազգամիջյան հարաբերությունների սրման, անվստահություն առաջացրին հայ և ադրբեջանցի բնակչության մեջ, պատճառ դարձան, որ մարդիկ հեռանան իրենց բնակության վայրերից, դուրս գան Հայաստանի և Ադրբեջանի սահմաններից։

Սումգայիթի ողբերգական դեպքերից հետո հազարավոր հայեր, թողնելով իրենց տները, եկան մեր հանրապետություն։ Մենք մեծ գործ ենք կատարել նրանց բնակարաններով ապահովելու, աշխատանքի տեղավորելու, նորմալ կենսապայմաններ ստեղծելու համար։ Մենք բոլորս՝ հանրապետության բնակիչներս, պետք է աշխատավորական կոլեկտիվներում, աշխատանքի և ուսման վայրերում նրանց շրջապատենք մշտական հոգատարությամբ և ուշադրությամբ։ Միևնույն ժամանակ Հայկական ՍՍՀ-ից երկրի այլ ռեգիոններ են մեկնել հազարավոր ադրբեջանցիներ։ Ստեղծված իրավիճակում մեր պարտքն է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել դադարեցնելու միգրացիոն պրոցեսները, որոնք ապակայունացնող ազդեցություն են գործում ռեգիոնի իրադրության



վրա, առավելագույն ուշադրություն և հոգատարություն ցուցաբերել յուրաքանչյուր ընտանիքի, հանրապետության յուրաքանչյուր քաղաքացու ճակատագրի նկատմամբ, անկախ նրա ազգային պատկանելությունից։

Մեր առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են ծառանում Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների իրագործման ուղղությամբ, որոնք անկեղծ հոգատարությամբ են տոգորված ռեգիոնում կայունության վերահաստատման, հայ և ադրբեջանական ժողովուրդների իսկական բարեկամության ամրապնդման նկատմամբ։ Այդ փաստաթղթերի սկզբունքային դրույթները տալիս են ԼՂԻՄ-ի պրոբլեմների լուծման հուսալի բանալի։

Ինչպես գիտեք, Լեռնային Ղարաբաղ է գործուղվել լայն լիազորություններով օժտված ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի ներկայացուցիչ, ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ ընկ. Ա. Ի. Վոլսկին՝ դիրեկտիվ մարմինների որոշումների կատարման ուղղությամբ Հայաստանի, Ադրբեջանի և ԼՂԻՄ-ի կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքը կազմակերպելու և կոորդինացնելու համար։

ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի հատուկ հանձնաժողովին հանձնարարված է ուսումնասիրել և ԼՂԻՄ-ի պրոբլեմների հետ կապված իր առաջարկությունները պատրաստ լինելուն պես ներկայացնել նախագահության քննարկմանը։

Լեռնային Ղարաբաղի պրոբլեմները շարունակում են գտնվել միութենական մարմինների ուշադրության կենտրոնում։ Մեր առջև բացվում են ԼՂԻՄ-ի հետ կապերի համակողմանի զարգացման, նրան սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և մշակութային բազմակողմանի օգնություն ցույց տալու լայն հնարավորություններ։

Արդեն առկա են այդ աշխատանքի առաջին արդյունքները։ Ինչպես ձեզ հայտնի է, մայիս ամսից Ստեփանակերտ քաղաքը և ինքնավար մարզի որոշ շրջաններ ընդունում են Հայաստանի հեռուստատեսության ծրագիրը։ Շարունակվում է աշխատանքը մեր հեռուստահաղորդումների ընդունման գոտին ընդլայնելու համար։ Այս ուսումնական տարում հանրապետության բուհերը իրենց դռները բացեցին Լեռնային Ղարաբաղի դպրոցների 272 շրջանավարտների առջև։ Լեռնային Ղարաբաղի դպրոցներ են առաքվել հայերեն դասագրքեր։ Երևանի նախագծային ինստիտուտներում սկսվել են սոցիալական և մշակութային նշանակության մի շարք կարևոր օբյեկտների նախագծման աշխատանքները։ Հանրապետական շատ կազմակերպություններ լրացուցիչ պարտավորություններ են ստանձնել Լեռնային Ղարաբաղին մատակարարելու առաջավոր տեխնիկա ու տեխնոլոգիա, կազմակերպելու տարբեր պրոֆիլների արդյունաբերական կոոպերատիվներ, հատկացնելու ֆոնդից դուրս արտադրանք։

Վերջերս Ստեփանակերտում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության ներկայացուցչի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների կենտրոնական կոմիտեների առաջին քարտուղարների, կուսակցության Լեռնային Ղարաբաղի մարզկոմի առաջին քարտուղարի մասնակցությամբ քննության առնվեցին Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ դիրեկտիվ մարմինների որոշումների իրագործմանն առնչվող բազմաթիվ հարցեր։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը միջոցներ է ձեռնարկել մշակելու Ստեփանակերտի մշակույթի պալատի, պիոներների տան, քաղաքային գրադարանի շինարարության նախագծային-նախահաշվային փաստաթղթերը։ Այդ օբյեկտները կառուցելու են Հայաստանի կապալային կազմակերպությունները։

Միութենական համապատասխան մինիստրություններին հանձնարարված է հաստատել Բադարչայ և Կարկաչայ գետերի վրա ջրամբարներ կառուցելու տեխնիկատնտեսական մշակումները, ինչպես նաև 1989 թվականին ավարտել Ղարաբաղի խմբային ջրմուղի առաջին հերթի շինարարությունը, լուծել ինքնավար մարզում նոր, ժամանակակից օդանավակայանի նախագծման ու շինարարության հետ կապված հարցերը։

Մինչև 1988 թվականի հոկտեմբերի 1-ը հաստատվելու է Ստեփանակերտ—Լաչին—Գորիս ավտոճանապարհի հիմնական նորոգման, վերակառուցման ու շինարարության գրաֆիկը, այն հաշվով, որ աշխատանքներն ավարտվեն 1990

թվականին, իսկ ՍՍՀՄ տրանսշինմինը 1988 թվականի ընթացքում ապահովելու է Լաչին քաղաքը շրջանցող ճանապարհահատվածի կառուցման նախագծային մշակումները։

Այս և մի շարք ուրիշ աշխատանքների կատարման համար ՍՍՀՄ պետպլանը և պետմատը հատկացրել են անհրաժեշտ քանակությամբ բուլդոզերներ, խողովակաշար մեքենաներ, աշտարակային կռունկներ, ավտոգրեյդերներ, ավտոբուսներ, բեռնատար ավտոմեքենաներ և այլ շինարարական մեքենաներ ու մեխանիզմներ։

Նախատեսվում է նաև Հայկական ՍՍՀ-ի և ԼՂԻՄ-ի մշակութային կապերի զարգացման լայն ծրագիր։ Մեր աշխատավորական կոլեկտիվների, ստեղծագործական միությունների, մշակույթի հիմնարկների պարտքն է իրենց ակտիվ մասնակցությունը բերել այդ ազնիվ գործին, նպաստել նախատեսված ծրագրերի իրականացմանը։

Ընկերներ։ Այսօր մեր առաջնահերթ խնդիրն է ուժեղացնել աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը։

Հարգանքից զատ ուրիշ զգացում չի կարող հարուցել մարդու ցանկությունը՝ արժանավայել ներկայացնելու իր ժողովուրդը, իր ազգությունը։ Բայց մենք պետք է գիտակցենք, որ միասնական ընտանիքի զգացումը մեր կյանքի հիմքն է բոլորիս ընդհանուր տանը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունում։

Հայ ժողովուրդը հպարտ է, որ պատկանում է իրավահավասար սովետական ժողովուրդների ընտանիքին և խորապես գիտակցում է, որ էկոնոմիկայի ու մշակույթի բնագավառում իր ձեռք բերած բոլոր հաջողությունների ու նվաճումների համար պարտական է ոչ միայն իր աշխատասիրությանն ու տաղանդին, այլ նաև հսկայական չափով ռուս մեծ ժողովրդի, սովետական բազմազգ տերության մյուս ժողովուրդների հետ եղբայրությանը։ Մեր պարտքն է աչքի լույսի պես պահպանել այդ եղբայրությունը՝ մեր ժողովրդի հետագա առաջադիմության ու բարգավաճման երաշխիքը։

Մեր ժողովրդի ազգամիջյան հաղորդակցման կուլտուրան գործնականորեն դրսևորվում է Սովետական Հայաստանում բնակվող ռուսների, ուկրաինացիների, ադրբեջանցիների, վրացիների, քրդերի, հրեաների, հույների, ասորիների, ուրիշ ժողովուրդների ներկայացուցիչների հետ նրա ամենօրյա փոխհարաբերություններում։ Ու թեև մենք հանրապետությունում բնակվող ազգային փոքրամասնությունների հետ տարվող ամենօրյա աշխատանքի, նրանց հոգևոր ու մյուս պահանջմունքների բավարարման որոշակի փորձ ունենք, բայց չպետք է անտեսենք այդ բնագավառում եղած վրիպումներն ու թերությունները։

Ազգամիջյան հարաբերություններում չկան ու չեն կարող լինել մանրուքներ։ Այստեղ ամեն ինչ էական է, քանզի սոցիալ-մշակութային, նույնիսկ ամենօրյա կենցաղային հարցերը ժամանակին ու լրիվ չափով չլուծելը բացասաբար է անդրադառնում մարդկանց սոցիալական ինքնազգացողության վրա, ստեղծում է հոգեբանական անհարմարավետություն, առաջացնում ազգային ճնշվածության զգացում։ Հենց դրա համար էլ այդ բոլոր հարցերը պետք է մշտապես գտնվեն մեր ուշադրության կենտրոնում։

Իսկական բարեկամությունը ծնունդ է առնում իմացությունից։ Ուստի դժվար է պատկերացնել իսկական ինտերնացիոնալիզմը առանց ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների մշակութային արժեքների ու նվաճումների ակտիվ ստեղծագործական յուրացման։ Մշակութային փոխադարձ կապերի դերը անգնահատելի է ոչ միայն առանձին մարդու հոգևոր հորիզոնի ընդլայնման, այլև ամբողջությամբ վերցրած ազգային մշակույթի հարստացման գործում։ Ազգային մշակույթների շփումները նպաստում են դրանց փոխհարստացմանը։ Այս իմաստով կարևոր դեր է խաղում հաղորդակցումը այլ ժողովուրդների գրականությանը։ Այդ ուղղությամբ մեզանում որոշակի աշխատանք կատարվում է։ Այսպես, վերջին տարիներս հայերեն հրատարակվել է ռուս հեղինակների, մյուս եղբայրական հանրապետությունների գրողների 245 անուն գիրք՝ 4,5 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով։

Այս բնագավառում գլխավորն է՝ ավելի մանրակրկիտ, ավելի բանիմացորեն մոտենալ ստեղծագործությունների ընտրությանը, ըստ ամենայնի բա-





րելավել թարգմանության որակը, և թարգմանական գրքերի պոլիգրաֆիական ձևավորումը։

Այսօր մենք պետք է ընդունենք, որ տասնամյակներ շարունակ միանգամայն անբավարար ենք օգտագործում եղբայրական ժողովուրդների կյանքին ու մշակույթին հաղորդակցվելու մի այնպիսի կարևոր միջոց, ինչպիսին է շնորհալի երիտասարդներին ուսման համար երկրի բուհեր, ինչպես նաև զինվորական ուսումնական հաստատություններ ուղարկելը։

Մեր գիտական ու ստեղծագործական մտավորականության փայլուն ներկայացուցիչներից շատերը ժամանակին կրթություն են ստացել Մոսկվայում, Լենինգրադում, և նրանց աշխարհայացքը, տաղանդը ձևավորվել են սովետական գիտության ու մշակույթի խոշոր կենտրոնների բարերար մթնոլորտում։ Մինչդեռ այդ բարի ավանդույթները մենք ոչ միայն չենք զարգացնում, այլև աստիճանաբար կորցնում ենք։ Նույնիսկ երկրի բուհերի նպատակային արտամրցութային ընդունելության համեստ պլանը մենք տարեցտարի չենք կատարում, և վերջին 20 տարում կորցրել ենք հարյուրավոր տեղեր։

Մենք աստիճանաբար կորցնում ենք կապերը Մոսկվայում, Լենինգրադում, մեր երկրի ուրիշ քաղաքներում ու ռեգիոններում բնակվող մեր հայրենակիցների՝ նշանավոր գիտնականների՝ մշակույթի ու արվեստի գործիչների հետ։ Նրանցից շատերը ամբողջ հոգով կապված են իրենց նախնիների երկրի հետ, ապրում են նրա ուրախություններով ու դառնություններով, անկեղծորեն ցանկանում են իրենց ավանդը մուծել Սովետական Հայաստանի էկոնոմիկայի, մշակույթի, հոգևոր կյանքի զարգացման մեջ։ Մենք պարտավոր ենք նրանց ընձեռել այդ հնարավորությունը։ Չէ՞ որ մեր հայրենակիցները կարող էին, օրինակ, ակտիվորեն մասնակցել հանրապետության համար կադրերի պատրաստմանը, հայ գրականության և մշակույթի պրոպագանդմանն ու մասսայականացմանը։ Կարելի էր ավելի հաճախ կազմակերպել մեր հայրենակիցների՝ արվեստի հայտնի վարպետների հյուրախաղեր հանրապետությունում, գիտնականներին հրավիրել բուհերում և այլ լսարաններում դասախոսություններ կարդալու, կինոյի, թատրոնի ռեժիսորներին՝ բեմադրություններ իրականացնելու, բացել նկարիչների անհատական ցուցահանդեսներ։ Այս գործում պետք է ավելի մեծ նախաձեռնություն հանդես բերեն Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությունը, Մոսկվայում մեր մշտական ներկայացուցչությունը։ Այդ կապերի աշխուժացումը կարող էր նպաստել ոչ միայն մեր հոգևոր կյանքի հարստացմանը, այլև երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությանը։

Լեզուն ժողովրդի հոգին է, նրա անգին հոգևոր հարստությունը, նրա մշակույթը։ Ուստի մայրենի լեզվի նկատմամբ հոգատար վերաբերմունքը, կյանքի բոլոր ոլորտներում դրա լայն գործածությունը մեր կարևորագույն խնդիրն են։ Միանգամայն անթույլատրելի է, երբ որոշ ղեկավարներ իրենց անխոհեմ որոշումներով ու գործելակերպով երբեմն արհեստականորեն նեղացնում են հայոց լեզվի գործածության ոլորտը, որ օրենսդրականորեն վավերացված է որպես Հայկական ՍՍՀ պետական լեզու։ Մենք պարտավոր ենք ամրապնդել հայոց լեզվի վարկը, բոլոր պայմանները ստեղծել նրա զարգացման ու հարստացման համար։

Արմատական վերակառուցման կարիք ունի ոչ հայկական դպրոցներում, ինչպես նաև բուհերում, հայոց լեզվի դասավանդման կազմակերպումը։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ դպրոցի յուրաքանչյուր շրջանավարտ կատարելապես տիրապետի մայրենի լեզվին։ Սա քաղաքական նշանակության հարց է։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի խրախուսել և ամեն կերպ օժանդակել հանրապետությունում բնակվող մյուս ազգությունների քաղաքացիների ձգտմանը սովորել հայոց լեզու։

Կարելի է մեր բուհերի բանասիրական ֆակուլտետներում մտցնել արևմտահայերենի դասընթաց, ավելացնել հայագիտական թեքումով դպրոցների թիվը։ Մեզ հարկավոր են բացատրական, ճյուղային նոր բառարաններ, կատարելագործված ինքնուսույց ձեռնարկներ, զրուցագրքեր։

Մի խոսքով, մենք պետք է հիշենք, որ մայրենի լեզվի իմացությունը մարդու հոգևոր հարստության, ինտելիգենտության անհրաժեշտ պայմանն է։

Հարկ կլինի, որ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը, գուցեև ՀԿԿ Կենտկոմի բյուրոն հատուկ քննարկեն ու լուծեն հանրապետությունում հայոց

լեզվի գործածության բարելավմանը և դպրոցներում ու մյուս ուսումնական հաստատություններում դրա դասավանդման պայմանների կատարելագործմանն առնչվող հարցերը։

Դրա հետ մեկտեղ մենք պետք է միշտ հիշենք, թե որքան մեծ է ռուսաց լեզվի՝ որպես ազգամիջյան հաղորդակցման միջոցի նշանակությունը, որի օգնությամբ հայ ժողովուրդը և մյուս ժողովուրդները հաղորդակցվում են ռուսական ու համաշխարհային մշակույթի գանձարանին։ Մեզ մոտ քիչ բան չի արված ռուսաց լեզվի դասավանդումը բարելավելու համար։ Ավելանում է ռուսաց լեզվի խորացված դասավանդմամբ ազգային դպրոցների թիվը, ներդրվում է դասավանդման առաջադիմական մեթոդիկա։ Սակայն դեռևս ցածր է այդ աշխատանքի արդյունավետությունը։ Շրջանավարտների մի մասը, առանձնապես գյուղական վայրերում, վատ է տիրապետում ռուսաց լեզվին։ Չի կարելի նորմալ համարել, որ հանրապետությունում ռուսաց լեզվի ուսուցիչների մոտավորապես տասը տոկոսը բարձրագույն կրթություն չունի։ Այս բոլոր հարցերի նկատմամբ պետք է ուժեղացնեն ուշադրությունը Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Մինիստրների խորհուրդը, հանրապետության ժողովրդական կրթության մինիստրությունը։

Հսկայական ճանաչողական ու դաստիարակչական պոտենցիալ ունի հայ ժողովրդի հարուստ մշակութային ժառանգությունը, որն իր մեջ ամբարել է նրա պատմական ճակատագրի հիշատակները։ Այն ամեն լավագույնը, ինչ ստեղծված է հայ ժողովրդի տաղանդով, ինչը մեզ է հասել դարերի խորքից, մենք պետք է դարձնենք ժողովրդի սեփականությունը և սրբորեն պահպանենք սերունդների համար, քանզի մենք՝ ժամանակակիցներս, անցյալի համար պատասխանատու ենք ապագայի առջև։ Դրա համար պետք է ծավալել մեծ, բարդ ու քրտնաջան աշխատանք, կազմակերպել մշակույթի հուշարձանների գիտական անվանագրումը, դրանց վերականգնումը, կատարելագործել թանգարանային գործը, ավելի խելամտորեն ու նպատակահարմար տեղաբաշխել մեր թանգարաններն ու գրապահոցները, հրատարակել գրական հուշարձաններ, կազմակերպել դրանց թարգմանությունը ՍՍՀՄ և արտասահմանյան երկրների ժողովուրդների լեզուներով։

Պետք է նշել, որ մենք երբեմն բավական անհոգ վերաբերմունք ենք ցուցաբերում դեպի մեր մշակութային ժառանգությունը, ինչի վկայությունը կարող է հանդիսանալ, օրինակ, երկու այդպես էլ չիրականացված հրատարակությունների տխուր ճակատագիրը։ Խոսքը վերաբերում է ամենից առաջ Հայկական ՍՍՀ պատմության և մշակույթի հուշարձանների ժողովածուին, որի հրատարակման որոշումը հանրապետության Մինիստրների խորհուրդը ընդունել է դեռևս 1969 թվականին, սակայն այդքան կարևոր գործը ինքնահոսի է մատնվել և ըստ էության ձախողվել։ Մինչև օրս տպագրության չի պատրաստված ոչ մի հատոր, իսկ այդ նույն ժամանակ Բելոռուսական ՍՍՀ-ում լույս է տեսել նույնանման հրատարակության յոթ հատոր։ Նույն ճակատագրին է արժանացել «Հայկական ՍՍՀ քաղաքների ու գյուղերի պատմությունը» վեցհատորյակը։

Մենք պետք է թանկ գնահատենք մեր պատմության ամեն էջը, քանի որ դա մեր պատմությունն է, ու մենք նրանից խույս տալու իրավունք չունենք։ Մենք հեռավոր և ոչ այնքան հեռավոր անցյալի մասին պետք է իմանանք ամբողջ ճշմարտությունը, որքան էլ այն դառն լինի։ Այս առնչությամբ կուզենայի խոսել այն մարդկանց բարի անունները ժողովրդին վերադարձնելու մեր բարոյական ու քաղաքական պարտքի մասին, ովքեր անհատի պաշտամունքի տարիներին հանրապետությունում անհիմն բռնությունների են ենթարկվել։ Այդ նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն վերջերս կազմեց հատուկ հանձնաժողով, որը գլխավորում է Կենտկոմի առաջին քարտուղարը։ Կոմունիստների գործերը քննվելու են ապօրինաբար բռնության ենթարկվածներին կուսակցության մեջ վերականգնելու նպատակով։ Մենք պետք է գործն այնպես տանենք, որ ոչ մի անուն, ոչ մի ողբերգական ճակատագիր մոռացության չմատնվի, որ յուրաքանչյուրի կյանքն ու գործերը ճիշտ և արդարացի գնահատական ստանան։ Մենք պետք է խոր հարգանքի տուրք մատուցենք անօրինության զոհերին, բոլոր նրանց, ովքեր հերոսաբար կռվել են Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար, դրել սոցիա-



լիզմի առաջին հիմնաքարերը։ Ու թեև նրանց լավագույն հուշարձանը այսօրվա Հայաստանն է, սակայն մեր մարդկային պարտքն է հավերժացնել նրանց անունները՝ Երևանում կանգնեցնելով այդ զոհերի հուշարձանը, մանավանդ որ, նրանցից շատերը նույնիսկ գերեզման չունեն։ Կարծում եմ, այս նախաձեռնությունը պաշտպանություն կգտնի հանրապետության աշխատավորության, ամբողջ հասարակայնության կողմից։ Հազարավոր անմեղ տուժածների նկատմամբ պատմական արդարության վերականգնումը, անտարակույս, քավիչ մեծ ուժ, դաստիարակչական խոշոր նշանակություն կունենա, կծառայի մեր հասարակարգին ներհատուկ բարոյական վեհ սկզբունքների հաստատմանը։

Այժմ, երբ մեր ժողովուրդը ուղղում է մեջքը, պետք է աշխատանք սկսել վերադարձնելու դժնի ժամանակներում մոռացության դատապարտված ազգային գրականության և արվեստի ստեղծագործությունները։ Այս կապակցությամբ գուցե պետք է կազմել ստեղծագործական միությունների, գիտական հիմնարկների ներկայացուցիչներից բաղկացած հանձնաժողով, որը զբաղվի այդ հարցով և համապատասխան առաջարկություններ մշակի։

Մենք շատ անելիքներ ունենք ժողովրդի պատմական հիշողության բացերը լրացնելու, անցյալի մի շարք հասարակական ու մշակութային դեմքերի մարքսիստական գնահատման գործում, դեմքեր, որոնք ոչ միանշանակ, հասարակական-քաղաքական բարդ իրադրության մեջ, սոցիալական ու ազգային ազատագրության համար հայ ժողովրդի մղած պայքարի շատ ծանր պայմաններում օբյեկտիվ պատմական պրոցեսների ոչ ճիշտ ընկալման գերին են եղել։ Իբրև հետևանք նրանցից ոմանք իրենց կյանքի առանձին ժամանակահատվածներում հարել են զանազան քաղաքական կուսակցությունների ու հոսանքների։ Մասնավորապես, որոշ գրողների ստեղծագործության գաղափարագեղարվեստական բովանդակությունը, համամարդկային հնչողություն ունենալով, հաճախ չի տեղավորվում նրանց կուսակցական հակումների պրոկրուստյան մահճում։ Մեր պարտքն է հատիկը զատել որոմից, ժողովրդի սեփականությունը դարձնել այն ամեն լավագույնը, առաջավորը, առողջը, ինչ բովանդակում է նրանց ստեղծագործությունը։ Մենք հենց ա՛յդ ժառանգությունը պետք է վերցնենք։ Ընդ որում, անհրաժեշտ է ստեղծագործաբար վերաբերվել այդ գրողների գրվածքների հրատարակությանը, դրանք ուղեկցելով հստակ մարքսիստական, դասակարգային դիրքերից գրված ներածական հոդվածներով, անհրաժեշտ մեկնաբանություններով, գիտատեղեկատու ապարատով։

Մեր հանրապետության աշխատավորները ամեն տարի ապրիլի 24-ը նշում են որպես սգո օր։ Ըստ երևույթին, ժամանակն է քննելու հանրապետությունում ապրիլի 24-ը 1915 թվականի ցեղասպանության զոհերի հիշատակի օր պաշտոնապես հայտարարելու հարցը։

Մեր երկու միլիոնից ավելի հայրենակիցներ, որոնք պատմական ճակատագրի կամքով հայտնվել են օտարության մեջ, այսօր ապրում են աշխարհի շատ երկրներում, սփյուռքահայ համայնքներում։ Սփյուռքը ցեղասպանության դառը ժառանգությունն է։

Սփյուռքահայերի գերակշիռ մասը համակրանքով է վերաբերվում մեր սոցիալիստական երկրին, Սովետական Հայաստանը համարում է իր հայրենիքը, նրանցից շատերը որոշակի հեղինակություն են վայելում արտասահմանի հասարակական-քաղաքական ոլորտներում։ Սփյուռքահայ համայնքներում հրատարակվում են թերթեր ու հանդեսներ, լույս են ընծայվում գրքեր, զարգանում է մշակութային կյանքը։

Սփյուռքահայ առաջադիմական գրականությունն ու արվեստը, արևմտահայերենը մեր ընդհանուր մշակույթի ու հոգևոր կյանքի անբաժանելի բաղկացուցիչ մասն են։ Ուստի անհրաժեշտ է մշտական հոգատարություն ցուցաբերել դրանց նկատմամբ, ավելի լայնորեն հրատարակել սփյուռքահայ առաջադեմ բանաստեղծների, արձակագիրների, մշակույթի մյուս բնագավառների ներկայացուցիչների լավագույն ստեղծագործությունները։ Դա, ամեն ինչից զատ, կնպաստի արևելահայերենի և արևմտահայերենի փոխհարստացմանը։

Հասունացել է անհրաժեշտությունը տպագրության պատրաստելու և հրատարակելու «Սփյուռքի գրականության ու մշակույթի գործիչները» կենսամատենագիտական տեղեկագիրքը։ Հարկավոր է բարելավել սփյուռքի հայ-

կական դպրոցների համար մանկավարժական կադրերի պատրաստման ու վերապատրաստման, դասագրքերի և ուսումնամեթոդական ձեռնարկների կատարելագործման աշխատանքը։ Մենք պետք է ընդլայնենք կապերը սփյուռքահայ առաջադիմական թերթերի ու հանդեսների հետ, ավելացնելով Արմենպրեսի, սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեի, «Նորություններ» մամուլի գործակալության միջոցով ուղարկվող նյութերի քանակը, հանրապետական մամուլի էջերում ավելի լրիվ ներկայացնենք սփյուռքահայ գաղութների կյանքը դրա բազմազանությամբ ու հակասականությամբ հանդերձ։

Այդ փոխադարձ կապերի ուժեղացմանը, անկասկած, կծառայի «Վերածնված Հայաստան» հանդեսը, որը լույս է տեսնելու եկող տարվա սկզբից հայերեն, ռուսերեն, անգլերեն, ֆրանսերեն, գերմաներեն, իսպաներեն։ Ի դեպ, հարկ է մատնանշել, որ շատ վատ է կազմակերպված արտասահմանում սփյուռքի կոմիտեի պարբերական հրատարակությունների, հանրապետական մյուս թերթերի ու հանդեսների տարածումը, որոնք կարող էին մեր հայրենակիցներին պատմել այսօրվա Սովետական Հայաստանի մասին։ Առհասարակ մենք պետք է զգալիորեն աշխուժացնենք հայրենիք—սփյուռք փոխադարձ կապերը, դրանք հարստացնենք կոնկրետ բովանդակությամբ։ Ինչու, օրինակ, կանոնավորապես Սովետական Հայաստան չհրավիրել սփյուռքի գիտության, մշակույթի, բժշկության նշանավոր առաջադեմ գործիչների՝ փորձի փոխանակման, բուհերում դասախոսություններ կարդալու, կինո և թատերական բեմադրություններ իրականացնելու, արտասահմանյան հայագիտական, գիտական ու գեղարվեստական գրականության լավագույն նմուշները հայերեն թարգմանելու համար։

Վերակառուցումը բացում է սփյուռքի հետ նաև տնտեսական կապերի ամրապնդման, համատեղ ձեռնարկությունների ու կոոպերատիվների ստեղծման լայն հնարավորություններ։

Վերն ասվածի լույսով մեզ բավականաչափ արդյունավետ չի թվում սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեի գործունեությունը։ Կոմիտեն պետք է ավելի մեծ ստեղծագործական նախաձեռնություն ու եռանդ դրսևորի հայրենակիցների հետ կապերի ամրապնդման վսեմ գործում։ Նպատակահարմար կլիներ այդ գործի մեջ ներգրավել նաև հանրապետության արտգործմինիստրությունը, արտասահմանյան երկրների հետ բարեկամության ու մշակութային կապի հայկական ընկերությունը և մեր մյուս պետական, հասարակական կազմակերպությունները։

Սփյուռքահայ համայնքների պատմության ու ներկա վիճակի հարցերի ուսումնասիրությունը այսօր սովետական հայագիտության կարևոր խնդիրն է թե՛ գիտական և թե՛ քաղաքական տեսակետից։ Այս առնչությամբ ուշադրության է արժանի հայագիտական հետազոտությունների ինստիտուտ ստեղծելու Երևանի պետական համալսարանի առաջարկը, ինստիտուտ, որը միավորելով ջանքերը գիտությունների ակադեմիայի համապատասխան բաժնի հետ, հայագիտական խնդիրների լայն համակարգում կզբաղվի սփյուռքի պրոբլեմներով։

Վերջին տարիներս իրենց լուծումը չէին գտնում արտասահմանյան երկրներից հայերի հայրենադարձման, ինչպես նաև արտագաղթի տրամադրությունների աճի հետ կապված պրոբլեմները։ Սա մեր լուրջ մտահոգությունն է առաջացնում։ Այդ պրոբլեմները բարդ են։ Բայց դրանք անհետաձգելի լուծում են պահանջում։ Կարծում ենք, անհրաժեշտ է արմատապես վերակառուցել հայրենադարձության կազմակերպման և արտագաղթի տրամադրությունների հաղթահարման աշխատանքը։ Խոսքը մեր երկրի նոր քաղաքացիների նկատմամբ հոգատարության և ուշադրության ուժեղացման, նրանց սոցիալ-կենցաղային և այլ կարիքների ավելի լրիվ բավարարման, արտասահմանից ներգաղթած անձանց շրջանում գաղափարադաստիարակչական, բացատրական աշխատանքի կատարելագործման, մի շարք այլ հարցերի լուծման մասին է։

Հայրենադարձների նկատմամբ հոգատարությունը, նրանց հոգսերն ու պահանջմունքները միշտ պետք է լինեն կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների, տեղական սովետների գործկոմների, կոմերիտական ու արհմիութենական մարմինների, արտասահ-



մանից վերադարձող հայերի ընդունման և տեղավորման կոմիտեի ուշադրության կենտրոնում։

Վերակառուցման շնորհիվ վերաիմաստավորվում են եկեղեցու հետ մեր ունեցած հարաբերությունները։ Սովետական պետությունը դեմոկրատացման պայմաններում ձգտում է ամբողջ ժողովրդի, հավատացյալների և ոչ հավատացյալների միասնության՝ մեր հասարակության հետագա ամրապնդման նպատակով։ Ահա թե ինչու մենք պետք է ճիշտ գնահատենք Էջմիածնի տեղն ու դերը խաղաղարարական գործունեության, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման, սփյուռքի հետ Սովետական Հայաստանի կապերի զարգացման, իսկական հայրենասիրության հիմքի վրա հայ համայնքների համախմբման բնագավառում։ Հավանաբար պետք է մտածել նաև հանրապետության հոգևոր ու մշակութային կյանքի, հասարակության բարոյական նորացման մի շարք հարցերում հայ եկեղեցու հետ համագործակցության ձևերի մասին։

Ընկերնե՛ր։

Մեր երեխաների այսօրվա հոգևոր մակարդակով, գիտակցությամբ, կուլտուրայով է պայմանավորված, թե հայ ժողովուրդը ինչպիսին կլինի 21-րդ դար թևակոխելիս: Ու եթե մենք այսօր, իրականացնելով կրթության ռեֆորմը, ձեռքից բաց թողնենք ինչ-որ էական բան, վաղը դա ուղղելը դժվար կլինի։

ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի փետրվարյան պլենումում նշվեց, որ մեր հասարակությունը կրթված, համոզված, սոցիալիզմին նվիրված և դրա հետ մեկտեղ՝ ակտիվ, դեմոկրատիայի պայմաններում ապրել ու աշխատել կարողացող քաղաքացու կարիք ունի։ Իսկ մենք ինչպե՞ս ենք լուծում այդ շատ կարևոր ու շատ պատասխանատու խնդիրը մեր հանրապետությունում, ինչպե՞ս ենք դպրոցներում, տեխնիկումներում, բուհերում, պրոֆտեխկրթության համակարգում դաստիարակում այդպիսի քաղաքացի։

Այստեղ կա իրենց լուծմանը սպասող պրոբլեմների մի ամբողջ կոմպլեքս։ Եվ դրանցից առաջինը գիտելիքների որակն է։ Մեզանում, օրինակ, այս տարի յուրաքանչյուր երրորդ մեդալակիրը չկարողացավ հանձնել բուհերի քննությունները։ Եվ ոչ ոք, սկսած դպրոցի դիրեկտորից մինչև մինիստր, պատասխանատվություն չի կրում նման իրողության համար։

Ուսուցման որակի հարցերը չի կարելի լուծել հին մեթոդներով, գործի նկատմամբ հին վերաբերմունքով, հին մտածողությամբ։ Դպրոցական գործի նորացումը, ռեֆորմի իրականացումը անհնար են առանց ժողովրդական կրթության աշխատողների ներքին խոր վերակառուցման։

Չի կարելի հաշտվել այն վիճակի հետ, երբ արտադրությունում ուսուցում է անցնում հինգ դպրոցականից միայն մեկը, իսկ մեկ աշակերտական աշխատատեղին ընկնում է երկու անգամ շատ սովորող, քան միջին հաշվով Միությունում։ Ժողովրդական դեպուտատների տեղական սովետներն ու տնտեսական շատ ղեկավարներ փաստորեն ինքնամեկուսացել են այդ կարևոր գործից։

Դպրոցն առաջատար դեր է խաղում մատաղ սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակության գործում։ Հայ ժողովուրդը միշտ խորագույն հարգանքի զգացում է տածել սովետական բանակի նկատմամբ, ցույց տալով մարտական աշխատանքի հիանալի օրինակներ։ Մենք պարտավոր ենք պահպանել ու բազմապատկել այդ ավանդույթները, մեր երիտասարդությանը նախապատրաստել զինված ուժերի շարքերում արժանավայել ծառայության։

Բավականաչափ լուրջ պրոբլեմներ են կուտակվել նաև բարձրագույն ու միջնակարգ կրթության համակարգում մասնագետների պատրաստման գործում։ Այն տպավորությունն է ստեղծվում, որ մենք առհասարակ չգիտենք, թե մեզ որքան մասնագետ է հարկավոր։ Տասնմեկերորդ հնգամյակում բուհերի 9 հազար շրջանավարտներ չեն ապահովվել նշանակման կոնկրետ տեղով, իսկ դա մոտավորապես հավասար է ուսանողների մեկ տարվա ընդունելության թվին։ Ճյուղային շատ մինիստրություններ ու գերատեսչություններ, միավորումներ ու ձեռնարկություններ մասնագետների պատրաստմանը վերաբերվում են ոչ թե որպես ուսումնական հաստատությունների շահագրգիռ գործակիցներ, այլ որպես անփույթ, անտարբեր սպառողներ։

# ՎՃՌԱԿԱՆ ԲԵԿՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՅՈՒՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ ԳՈՐԾՈՒՄ

Ընկերներ։

Համամիութենական կուսակցական կոնֆերանսն ուշադրությունը հատկապես սրեց էկոնոմիկայում՝ այդ վճռական ոլորտում, հեղափոխական նորացման պրոբլեմների վրա։

Երկար ժամանակ, խորացող անհամամասնությունների ֆոնի վրա, մենք տնտեսական առաջադիմության պատրանք էինք ստեղծում, մինչդեռ պրոբլեմները ժողովրդական տնտեսության մեջ ավելի արագ կուտակվում էին, քան լուծվում։ Ավելին, եթե ամբողջությամբ վերցրած երկրում վերջին երեք տարում սկսվեց էկոնոմիկայի առողջացման պրոցեսը, ապա մեր հանրապետությունում էլ ավելի խորացան բացասական միտումները։ Ազգային եկամտի և հանրային աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպերն ընթացիկ հնգամյակում նախորդի համեմատությամբ նվազել են համապատասխանաբար 2,4 և 2,1 անգամ։ Միայն վերջին երկու տարում ազգային եկամտի ֆոնդատարությունը մեծացել է 7,7, հանրային արտադրանքի նյութատարությունը՝ 1,7 տոկոսով։ Շատ ցուցանիշների գծով ձախողվում է ընթացիկ հնգամյակի պլանների կատարումն արդյունաբերության, կապիտալ շինարարության, գյուղատնտեսության մեջ, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։ 65 կարևորագույն արդյունաբերական արտադրատեսակներից գրեթե յուրաքանչյուր երկրորդի գծով հնգամյա պլանը չի կատարվում։ Նման վիճակը չէր կարող չանդրադառնալ պայմանագրային մատակարարումների վրա։ Այսօր հանրապետությունն այդ կարևորագույն ցուցանիշով վերջին տեղն է գրավում երկրում։

Նման վիճակում մենք հայտնվել ենք ոչ պատահականորեն։ Մեզանում հաճախ էր տարփողվում այն միտքը, թե միութենական միջինի համեմատությամբ հանրապետությունում ապահովվել են հասարակական արտադրանքի, ազգային եկամտի, էկոնոմիկայի առաջատար ճյուղերի արտադրության ծավալների աճի արագ տեմպեր։ Սակայն հարց չէր տրվում՝ իսկ ի՞նչ ուղիով, ի՞նչ միջոցներով էին ապահովվում այդ առաջանցիկ տեմպերը։ Մինչդեռ դրանք ապահովվում էին էկոնոմիկայի զարգացման ծախսումային բնույթի համատարած ուժեղացմամբ, ամբողջ հասարակական արտադրության արդյունավետության նվազեցման պայմաններում։

Վերջին 10 տարում ժողովրդական տնտեսության մեջ ապրանքանյութական արժեքների պաշարները 1,3 անգամ ավելի արագ են մեծացել, քան արտադրված ազգային եկամուտը։ Էապես աճել են վերջնական արդյունքի կապիտալատարությունը և ֆոնդատարությունը։ Բավարար ուշադրություն չէր նվիրվում աճի ինտենսիվ գործոններին, որոնց իրական բաժինն ազգային եկամտի միջին տարեկան հավելաճի մեջ չէր անցնում 20 տոկոսից։

Նման քաղաքականությունը հանգեցրեց տնտեսական զարգացման նպատակների ու խնդիրների ձևախեղման, անհաշվեկշռվածության առաջացման նյութական և ոչ նյութական ոլորտների, հիմնական արտադրության ու նրա ենթակառուցվածքի, նյութահումքային ռեսուրսների արտադրության ու դրանց վերամշակման, առանձին տնտեսական ու վարչական ռեգիոնների զարգացման մակարդակների միջև։

Ձևայած արդյունաբերության կառուցվածքում տեղի ունեցած որոշ առաջադիմական տեղաշարժերին, նրա առաջատար ճյուղերը հայտնվեցին խոր ճեղքվածքում։ Ստեղծվեց պարադոքսային իրադրություն։ Տարեցտարի հանրապետության արդյունաբերության մեջ մեծանում է մեքենաշինության բաժինը։ Այդ ճյուղն է որոշում այսօրվա Հայաստանի էկոնոմիկայի մասնագիտացման բնույթը։ Բոլոր ծրագրերն ու ապագայի նպատակային խնդիրներն այսպես թե այնպես շաղկապված են նրա հետագա զարգացման հետ։ Բայց միևնույն ժամանակ այդ ճյուղում ավելի, քան որևէ մեկ ուրիշում, այնքան չլուծված պրոբլեմներ են կուտակվել և այնքան են խորացել լճացման երևույթները, որ մեքենաշինական համալիրը, ըստ էության, դարձել է ամենադժվարին տեղամասը հանրապետության ամբողջ էկոնոմիկայի զարգացման մեջ։



Գերատեսչական տարանջատվածությունը, վերջնական արտադրանքի փոքր բաժինը, բազմապրոֆիլությունը և միջճյուղային (ասենք նաև՝ ներճյուղային) մասնագիտացման ու կոոպերացման գրեթե լիակատար բացակայությունը էապես դանդաղեցնում են ճյուղի զարգացումը։ Նրա խոշոր ձեռնարկությունները օրենսդիրներ չեն դարձել գիտատեխնիկական առաջադիմության կոնկրետ ուղղություններում, այդ նպատակներով սակավ արդյունավետ է օգտագործվում մտավոր պոտենցիալը։ Ճյուղի ձեռնարկություններում արտադրանքի նորացման մակարդակը 1987 թվականին կազմում էր ընդամենը 5,7 տոկոս։ Թողարկվող արտադրանքի ավելի քան 26 տոկոսը ունի 10 և ավելի տարիների վաղեմություն։

Առանձնապես շատ է հետ մնում մեր հաստոցաշինությունը։ Օրինակ, արտահանվող արտադրանքի ծավալն այստեղ դեռ չի հասել 70-ական թվականների վերջերի մակարդակին։ 1987 թվականին հանրապետությունում պատրաստվել է 10290 հաստոց, որից ընդամենը 664-ը կամ 6,5 տոկոսն է թվածրագրային կառավարմամբ, սակայն դրանք էլ, իրենց հերթին, ամենևին չեն ներկայացնում մեքենաշինության այսօրը։

Ներկայումս ամենանեղ տեղը մնում է արտադրանքի որակը։ Վերջին երկու տարում արդյունաբերության մեջ խոտանի պատճառած տարեկան կորուստները 27 տոկոսով ավելի էին, քան միջին հաշվով տասնմեկերորդ հնգամյակի տարիներին։ Երկրի բոլոր ծայրերից մենք շարունակում ենք ստանալ բողոքարկներ ու վնասապահանջներ։ Շատ արտադրատեսակների որակի գծով, հատկապես՝ մեքենաշինության ու թեթև արդյունաբերության, որոնց բաժին է ընկնում ամբողջ արտադրանքի ավելի քան 58 տոկոսը, մենք այսօր էապես հետ ենք մնում ոչ միայն համաշխարհային ստանդարտներից, այլև միջին միութենական մակարդակից։

Օրինաչափ է հարցը։ ինչո՞ւ են վերջին տարիներս արդյունաբերության մեջ վատացել որակական ցուցանիշները։ Պատասխանը միանշանակ է։ Մենք չկարողացանք գործնական աշխատանքի հիմքում դնել գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների արմատավորումը, նորովի իմաստավորել տեխնիկական վերազինման, վերափոխման ու ռեսուրսախնայողության պրոբլեմները, փաստորեն անպատրաստ եղանք զարգացման ինտենսիվ գործոնների լայն օգտագործմանը։ Այսօր էլ արտադրական կապիտալ ներդրումների ծավալի մոտ երկու երրորդը տրամադրվում է արտադրության ընդլայնմանը։ Նման քաղաքականությունը չէր կարող չհանգեցնել հին ֆոնդերի կուտակմանը, արտադրության տեխնիկական վիճակի վատթարացմանը։ Այժմյան տեմպերի ու համամասնությունների պայմաններում գործող արտադրական ֆոնդերի լրիվ նորացման համար մեզանից կպահանջվի ավելի քան 40 տարի։ Մինչդեռ վերջին երկու տարում տեխնիկական վերազինման համար նախատեսված կապիտալ ներդրումներն իրացվել են ընդամենը 70 տոկոսով։ Իսկ 1988 թվականի սկզբի դրությամբ միայն մեքենաշինական ձեռնարկություններում կար ավելի քան 18 միլիոն ռուբլու չտեղակայված սարքավորում, այդ թվում՝ մոտ 6 միլիոն ռուբլու՝ արտասահմանյան։ Պարզ է, որ նման մոտեցման դեպքում մենք չենք կարողանա կատարել գիտատեխնիկական առաջադիմության արմատական արագացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջը։

Այս գործին իր վճռական ավանդը պետք է բերի մեր գիտությունը։ Սակայն մեզանում առկա ավելի քան 230 գիտահետազոտական հիմնարկների, ինքնուրույն լաբորատորիաների, հաշվողական կենտրոնների ուժերն ու միջոցները չեն կենտրոնացվում զարգացման հանգուցային պրոբլեմների արդյունավետ լուծման վրա։ Տևականորեն չեն կատարվում գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման պլանները, աճում է ձեռքի աշխատանքի բաժինը։ Միայն 1985—87 թվականներին նոր տեխնիկայի արմատավորումից ստացվող տարեկան տնտեսական արդյունքը կրճատվել է 13 միլիոն ռուբլով, մինչդեռ այդ նպատակով կատարվող ծախսերը մեծացել են 238 միլիոն ռուբլով։ Մի՞թե թույլատրելի է, որ մտահղացումից մինչև մարմնավորում անցնում է գրեթե 10 տարի և արտադրության մեջ ներդրվում են արդեն բարոյապես հնացած արտադրատեսակներ։ Նման ցածր հատույցը մեծապես հետևանք է հանրապետությունում գիտատեխնիկական առաջադիմության կառավարման

նարարական արտադրության և նախագծանախահաշվային գործի կազմակերպման մակարդակի բարձրացմանը: Բացակայում է վերահսկողությունը շինանյութերի, մեխանիզմների, փոխադրամիջոցների արդյունավետ օգտագործման, շինմոնտաժային աշխատանքների գրաֆիկների կատարման, օբյեկտների գործարկման նկատմամբ: Կապիտալ շինարարության պլանների կատարման գործում ցածր է պատվիրատուների դերն ու պատասխանատվությունը:

Առանձնակի ուշադրություն են պահանջում շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը: Այստեղ սարքավորումների մոտ 70 տոկոսը ֆիզիկապես ու բարոյապես հնացած է, իսկ տեխնոլոգիան գտնվում է 50-ական թվականների մակարդակին: Տարեցտարի մենք չենք իրացնում շինարարության սեփական բազայի զարգացման համար նախատեսվող առանց այն էլ աննշան կապիտալ ներդրումները: Երկաթբետոնե կոնստրուկցիաների, ապրանքային բետոնի ու շաղախի, ատաղձագործական, սանտեխնիկական և այլ արտադրանքի պահանջը բավարարվում է ընդամենը 50—60 տոկոսով:

Որքան էլ տարօրինակ է, այսօր շինարարներին չի բավականացնում անգամ քարը: Շինանյութերի արդյունաբերության մինիստրի պաշտոնում ընկ. Լ. Ղազարյանի աշխատանքի շրջանում քարի արտադրությունը 1987 թվականին 1978 թվականի համեմատությամբ կրճատվել է հարյուր հազար խորանարդ մետրով: Նշված ժամանակամիջոցում մինիստրությունը չի կազմակերպել ոչ մի նոր արտադրատեսակի արդյունաբերական թողարկում, չեն իրացվել ճյուղի զարգացման համար նախատեսված ավելի քան 30 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ:

Այսպիսի թողտվության, այսպիսի անտնտեսվարության հետ Կենտկոմն այլևս մտադիր չէ հաշտվել: Հանրապետության Մինիստրների խորհուրդը, նորաստեղծ պետշինը (ընկ. Վ. Արծրունի) պետք է վճռական բեկում իրականացնեն կապիտալ շինարարության մեջ, առաջիկա երկու-երեք տարում շոշափելի տեղաշարժերի հասնեն նրա նյութատեխնիկական բազայի զարգացման, նախագծային գործի բարելավման, աշխատանքի որակի, ճյուղում կարգուկանոնի ու կազմակերպվածության բարձրացման առումով: Հարկավոր է բոլոր միջոցները ձեռնարկել շինարարական համալիրի նոր կառուցվածքի արդյունավետ աշխատանքը, կառուցվող օբյեկտների ու կարողությունների ժամանակին գործարկումը ապահովելու համար:

Շարունակում է առանձնակի կարևորության պրոբլեմ մնալ արտադրողական ուժերի տեղաբաշխման անհամամասնությունը: Բանն այն է, որ առանձին շրջանների զարգացման մակարդակների տարբերությունը տատանվում է 15-ից մինչև 20 անգամ: Այդ պրոբլեմի լուծման հիմնական ուղին համարվել է հանրապետության փոքր քաղաքներում ու գյուղական շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների, տեղամասերի ու արտադրամասերի տեղաբաշխումը, որոնցում այսօր զբաղված է մոտ 50 հազար մարդ: Դրանց ստեղծումը թեև ինչ-որ չափով լուծեց բնակչության զբաղվածության պրոբլեմը, սակայն սոցիալական արդյունքը սկսեց ավելի ու ավելի հակասության մեջ մտնել տնտեսական նպատակահարմարության հետ: Այդ արտադրությունները, որպես կանոն, հենվում են բարոյապես ու ֆիզիկապես հնացած սարքավորումների վրա, բավարար չափով չեն ապահովվում բարձրորակ կադրերով ու մասնագետներով: Այսօր դրանք տեխնիկատնտեսական ցուցանիշներով 2—4 անգամ զիջում են գլխադաս ձեռնարկություններին: Հարկավոր է նոր մոտեցում ցուցաբերել փոքր քաղաքներում ու շրջաններում էկոնոմիկայի զարգացման նկատմամբ՝ ստեղծել ճկուն ձեռնարկություններ, որոնք առավելապես կողմնորոշված լինեն դեպի տեղական ռեսուրսների արդյունավետ օգտագործումը: Նպատակահարմար է թվում տվյալ պարագայում լայնորեն օգտագործել վարձակալական և կոոպերատիվ հիմունքները:

Հարկ է նաև վերանայել հանրապետության արտադրողական ուժերի զարգացման ու տեղաբաշխման հեռանկարային ծրագրերը: Մենք բոլորս գիտենք, թե ինչպիսի բացասական հետևանքների հանգեցրեց արդյունաբերական արտադրության չարդարացված մեծ կենտրոնացումը Երևանում: Գիտենք նաև իրավիճակի շտկման ոչ հաջողակ փորձերի արդյունքները: Իրականում այդ





պրոցեսը ոչ միայն չի կասեցվել, այլև շարունակում է խորանալ: Ընթացիկ հնգամյակում բոլոր կարևորագույն նորակառույց ձեռնարկությունների կեսից ավելին տեղաբաշխվել է Երևանում և Երևանի մերձակայքում, ստեղծելով մոտավորապես 50 հազար նոր աշխատատեղ: Եթե դրան ավելացնենք նաև արտադրության ընդլայնման, համապատասխան ենթակառուցվածքի ստեղծման հետ կապված լրացուցիչ տեղերը, ապա նախնական հաշվարկների համաձայն Երևանի բնակչության մեխանիկական աճը կկազմի ավելի քան 100 հազար մարդ, ինչը անխուսափելիորեն կհանգեցնի գյուղական վայրերից բնակչության զգալի արտահոսքի:

Այս ամենը հետևանք է արտադրության տարածքային կազմակերպման ամբողջական ծրագրի ու կշռադատված մեխանիզմի բացակայության: Նոր ձեռնարկությունների ստեղծման, դրանց տեղաբաշխման հարցերը հաճախ լուծվում էին կամայականորեն, անխտեղ, անտեսվում էր հասարակական կարծիքը: Ներկա պայմաններում նման մոտեցումը անթույլատրելի է:

Լուրջ պրոբլեմներ են կուտակվել աշխատանքային ռեսուրսների օգտագործման ասպարեզում: Աշխատունակ բնակչության մոտ 18 տոկոսը հանրային արտադրության մեջ զբաղված չէ, ինչը 1,5 անգամ գերազանցում է միջին միութենական մակարդակը: Շատ շրջաններում, հատկապես Արարատի, Մասիսի, Գուգարքի, Մարտունու, Հոկտեմբերյանի և այլն, յուրաքանչյուր երրորդ աշխատունակ բնակիչը ապահովված չէ մշտական աշխատանքով: Այս կապակցությամբ պետք է խոստովանել, որ աշխատունակ բնակչության չզբաղեցված մասը հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու ծրագիրը սակավարդյունավետ դուրս եկավ: Դեռևս գործի չի դրվել բնակչության աշխատանքի տեղավորման, վերաուսուցման և մասնագիտական կողմնորոշման ամբողջական համակարգ:

Մեզ չի հաջողվել ապահովել նաև գիտականորեն հիմնավորված ժողովրդագրական քաղաքականություն ինչպես ամբողջ հանրապետությունում, այնպես էլ յուրաքանչյուր քաղաքում, շրջանում ու բնակավայրում: Ինչպես կարելի է անտարբեր անցնել այն փաստի կողքով, որ Ազիզբեկովի, Ապարանի, Արագածի, Ղափանի, Շամշադինի, Գորիսի և մի շարք այլ շրջանների գրեթե յուրաքանչյուր երկրորդ գյուղում վերջին տասնհինգ տարում տեղի է ունեցել բնակչության թվի ինտենսիվ կրճատում: Անխտեղ են լուծվում նախկինում վերացված բնակավայրերի վերականգնման, դրանց հողային ու արտադրական ռեսուրսները օժանդակ տնտեսությունների, կոոպերատիվների և վարձակալական կապալի կազմակերպման նպատակով օգտագործելու հարցերը:

Ժողովրդագրական քաղաքականության, աշխատանքային ռեսուրսների օգտագործման մեջ թույլ տրված վրիպումները հանգեցրին այն բանին, որ 80-ական թվականների սկզբից ծայր առան և աստիճանաբար խորացան հանրապետությունից բնակչության արտահոսքի պրոցեսները: Եթե տասներորդ հնգամյակում 1000 շնչի հաշվով բնակչության թիվը տեղաշարժի պատճառով ավելացել էր մեկ մարդով, ապա տասնմեկերորդ հնգամյակում՝ ընդհակառակը, նվազեց երեքով: Միայն 1987 թվականին բնակչության բացասական հաշվեմնացորդը կազմեց 14 հազար մարդ, հիմնականում գյուղական վայրերից: Այդ չափազանց լուրջ սոցիալ-քաղաքական երևույթին պատշաճ ուշադրություն չի նվիրվել:

Մինիստրների խորհուրդը, պետպլանը, աշխպետկոմը պետք է խորամուխ լինեն ստեղծված վիճակին և որակապես նոր քաղաքականություն վարեն այդ ուղղությամբ: Այդ քաղաքականությունը պետք է լինի հաստատակամ, արդիական, դրա իրականացման գործում վճռական տեղ պետք է հատկացվի ժողովրդական դեպուտատների տեղական սովետներին:

Ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրները քննելիս հարկ է հատուկ առանձնացնել արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման հարցը: Նոր տնտեսական քաղաքականության կենսագործման մեջ կենտրոնականը ձեռնարկությունների անցումն է լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման: Այս պայմաններում է աշխատում հանրապետության փաստորեն յուրաքանչյուր երկրորդ արդյունաբերական ձեռնարկությունն ու միավորումը: 1989 թվականին ռեֆորմը կընդգրկի նյութական արտադրության ոլորտի բոլոր ձեռնարկությունները:

Նոր պայմաններում շատ ձեռնարկությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ նրանց գործունեության մեջ տեղի են ունենում որոշ դրական տեղաշարժեր։ Սակայն տնտեսական մեխանիզմի վերակառուցումը մեզ մոտ ընդհանուր առմամբ իրականացվում է ոչ բավականաչափ ակտիվ, իսկ առանձին ուղղություններում՝ անբավարար։ Հանրապետության կոմկուսի Կենտկոմը (Կենտկոմի քարտուղար՝ ընկ. Կ. Ղամբարյան) հետևողականություն չի դրսևորել տնտեսական ռեֆորմի ղեկավարման խնդիրների մշակման և իրականացման գործում։ Կուսակցական կոմիտեների մեծ մասը, Կենտկոմի բաժինները, կառավարման վերակառուցումը համարելով զուտ տնտեսական խնդիր, ոչ բավարար նպատակասլացությամբ են զբաղվել լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման արմատավորման հարցերով։

Շատ կուսակցական կոմիտեներ, մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու միավորումների ղեկավարներ այնքան էլ լավ չեն ըմբռնել պետական ձեռնարկության մասին ՍՍՀՄ օրենքի բացառիկ կարևորությունը, ձևականորեն են վերաբերվում լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնակառավարման պայմաններում արտադրական կոլեկտիվների աշխատանքը նախապատրաստելուն ու կազմակերպելուն։

Հանրապետության ժողովրդական տնտեսությունը ֆինանսական առումով ևս անպատրաստ գտնվեց տնտեսավարման նոր մեթոդներին անցնելուն։ Նորովի աշխատելու ինչ պատասխանատվության մասին կարող է խոսք լինել, եթե 1987 թվականը վնասներով փակեցին արդյունաբերության 74 միավորում ու ձեռնարկություն, 96 շինարարական կազմակերպություն, 170 կոլտնտեսություն ու սովխոզ, ինչպես նաև մի շարք տրանսպորտային, մատակարարող ու առևտրական կազմակերպություններ՝ ավելի քան 174 միլիոն ռուբլի ընդհանուր վնասով։ Ընդհանուր առմամբ ժողովրդական տնտեսության մեջ պարտքը մատակարարներին ու բանկերին կազմում է ավելի քան 600 միլիոն ռուբլի, սեփական շրջանառու միջոցների պակասը՝ ավելի քան 190 միլիոն ռուբլի։ Ֆինանսական արդյունքների գծով պլանային առաջադրանքները չի կատարում յուրաքանչյուր հինգերորդ արդյունաբերական ձեռնարկություն և շինմոնտաժային կազմակերպություն։

Լուրջ ուշադրություն չի նվիրվում ներարտադրական տնտհաշվարկի զարգացմանը։ Հանրապետության արդյունաբերությունում աշխատանքի կազմակերպման կապալային ձևի մեջ ընդգրկված է բրիգադներում զբաղված բանվորների ընդամենը 8 տոկոսը, իսկ թեթև արդյունաբերության մինիստրության համակարգում, որն արդեն մեկուկես տարի աշխատում է նոր պայմաններում, բրիգադների ընդամենը 45 տոկոսն է տնտհաշվարկային և միայն ութ տոկոսն է աշխատում կոլեկտիվ կապալով։ Վիճակն էլ ավելի վատ է հանրապետության տարածքում տեղաբաշխված քիմիական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության, սարքաշինության մինիստրությունների ձեռնարկություններում։

Տնտեսական ռեֆորմը չի գործի, ռեալ արդյունքներ չի տա, եթե չշոշափի բառացիորեն յուրաքանչյուր աշխատավորի անձնական շահերը։ Իսկ դրա համար անհրաժեշտ է առանձնակի պատասխանատվությամբ մոտենալ աշխատանքի արձատրության նոր պայմաններին անցնելուն։ Սակայն այստեղ էլ էական թերացում է թույլ տրվել։ Ընթացիկ տարվա սկզբի դրությամբ այդ պայմաններին է անցել արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության, տրանսպորտի ու կապի ձեռնարկությունների 17 տոկոսը՝ երկրի միջին հաշվով 37 տոկոսի դիմաց։

Որպեսզի տնտհաշվարկը ավելի լրիվ բացահայտի իր առավելությունները, հարկավոր է որքան կարելի է արագ վերացնել կադրերի տնտեսագիտական անիրազեկությունը, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համապատասխան ծառայություններն ամրապնդել որակյալ մասնագետներով։ Չի կարելի նորմալ համարել, երբ տնտեսագիտական ծառայության մեջ զբաղված յուրաքանչյուր երրորդ անձը մասնագետ չէ, իսկ յուրաքանչյուր երկրորդը բարձրագույն տնտեսագիտական կրթություն չունի։

Մեզ այսօր չի բավարարում պետմատի, ֆինանսների մինիստրության, բանկերի, մյուս տնտեսագիտական գերատեսչությունների աննախաձեռնողական աշխատանքը նոր տնտեսական քաղաքականության գործնական խնդիրների լուծման ուղղությամբ։ Դանդաղ է իրականացվում անցումը արտադրամիջոցների մեծածախ առևտրի, չկա ռեալ վերակառուցում վերահաշվարկային համակարգում, դրամական շրջանառության ամրապնդման գործում։ Իրականացվող ֆինանսական քաղաքականությունն առայժմ լիովին նպատակամղված չէ նախաձեռնողական, բարձրարդյունավետ աշխատանքի համար անհրաժեշտ նախադրյալների ստեղծմանը։

Լուրջ թերություններ կան պետպլանի գործունեության մեջ։ Նրա ջանքերը ծայրահեղորեն անբավարար են կենտրոնացվում հնգամյա պլանների մշակման և հեռանկարային խնդիրների լուծման հարցերի վրա։ Նոր պայմաններում պլանները մշակելիս պետպլանը լիովին չի տիրապետում ստեղծված իրավիճակին, խորապես չի վերլուծում տեղերում տիրող իրադրությունը, որպես կանոն գերի է մնում մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ներկայացրած նախագծումներին։

Պլանային աշխատանքների գաղափարաբանության, ձևերի ու մեթոդների մեջ կտրուկ շրջադարձ չի կատարվել, առաջվա պես գերակշռում են ավանդական, ըստ էության պասիվ մոտեցումները, որոնք հաշվի չեն առնում տնտեսական կյանքում տեղի ունեցող արմատական փոփոխությունները։ Վերջապես ժամանակն է, որ պետպլանի ղեկավարությունը, նրա ապարատը հասկանան, որ իրենք լիակատար պատասխանատվություն են կրում ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետ և հաշվեկշռված զարգացման, ընդհանուր տնտեսական, միջճյուղային ու ռեգիոնալ համամասնությունների գիտականորեն հիմնավորված ձևավորման, բնակչության բարեկեցության բարձրացման խնդիրների առաջնահերթ լուծման պլանային ապահովման համար։ Հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ ընկ. Մ. Մկրտչյանը պետք է արմատապես փոխի ապարատի աշխատանքի ոճը, այն ամրապնդի որակյալ կադրերով (այսօր յուրաքանչյուր չորրորդ աշխատողը համապատասխան կրթություն չունի), գործնականորեն ապահովի պլանավորման գիտական մակարդակի էական բարձրացումը՝ ժողովրդական տնտեսության մեջ տեղի ունեցող պրոցեսների խոր վերլուծության հիման վրա։

Ստեղծված իրադրությունը պահանջում է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Մինիստրների խորհուրդը էապես ուժեղացնեն աշխատանքն այդ ուղղությամբ, անհրաժեշտ վերահսկողություն ապահովեն ռեֆորմի անցկացման նկատմամբ։ Մենք պետք է տասներեքերորդ հնգամյակ թևակոխենք կարգավորված տնտեսական մեխանիզմով։ Շիտակն ասած՝ եթե մենք ամենակարճ ժամանակամիջոցում կտրուկ բեկում չապահովենք էկոնոմիկայի կառավարման մեջ, ապա մեզանում ոչ մի վերակառուցում էլ չի լինի։

XIX կուսակցական կոնֆերանսում, ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի հուլիսյան պլենումում առանձնապես ընդգծվեց կառավարման կազմակերպական կառուցվածքների վերակառուցման կարևոր նշանակությունը։ Հարցն այն է, որ նոր տնտեսական և հասարակական-քաղաքական մեխանիզմի հիմնական սկզբունքներին համապատասխան արմատապես նորացվի բոլոր օղակների կառավարման ապարատի գործելակերպը։

Հանրապետությունում ավարտված է ժողովրդական տնտեսության կառավարման գլխավոր սխեմայի մշակումը, որը մենք պետք է մինչև տարեվերջ լիովին ներդնենք։ Սխեմայով նախատեսվում է մինիստրությունների ու գերատեսչությունների թվի կրճատում գրեթե մեկ երրորդով, դրանց կենտրոնական ապարատի թվակազմի կրճատում շուրջ հիսուն տոկոսով, ինքնուրույն կառուցվածքային ստորաբաժանումների քանակի կրճատում՝ համարյա կիսով չափ։ Ամբողջությամբ վերցրած կառավարչական ապարատի ընդհանուր թվակազմի կրճատումը կանցնի 6 հազար մարդուց։ Սակայն գլխավորը ոչ թե կառավարման հաստիքների կրճատումն է, այլ ղեկավարման վարչական մեթոդներից առավելապես տնտեսագիտական մեթոդների անցնելու համար անհրաժեշտ բոլոր կազմակերպական նախադրյալների ստեղծումը։

Հարկ է առանձնակի պատասխանատվությամբ մոտենալ յուրաքանչյուր մինիստրության ու գերատեսչության կառավարման նոր սխեմաների մշակմանը և մինչև տարեվերջ դրանց ներդրմանը։ Գործի ընթացքը վկայում է, որ շատ դեպքերում մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցա-

կան կազմակերպությունները և ղեկավարները մեխանիկորեն են մոտենում
այդ հարցին։ Կառուցվածքային ստորաբաժանումներում էական ֆունկցիո-
նալ փոփոխություններ չեն նախատեսվում, չի պլանավորվում նաև սկզբնա-
կան օղակի՝ ձեռնարկության, միավորման մակարդակով կառավարման որա-
կական վերակառուցում։ Չի կարելի թույլ տալ, որ ժողովրդական տնտեսու-
թյան կառավարման կատարելագործման պրոցեսում գերիշխեն գերատեսչա-
կան շահերն ու առանձին չինովնիկների սուբյեկտիվիզմը։ Այս հարցին պետք
է սկզբունքորեն մոտենան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քարտու-
ղարությունը, հանրապետության կառավարությունը։

Աշխատանքը կշռադատված պետք է տանել նաև քաղաքային ու շրջանա-
յին մակարդակներով։ Բանի էությունն այստեղ այն է, որ ուժեղացվի ժողո-
վրդական դեպուտատների տեղական սովետների գործկոմների ազդեցությու-
նը առևտրի, բնակչության կենցաղային, կոմունալ, բժշկական, կուլտուրական
սպասարկման բարելավման խնդիրների լուծման գործում, բարձրացվի նրանց
կոորդինացնող դերը քաղաքների ու շրջանների կոմպլեքսային սոցիալ-տըն-
տեսական զարգացման հարցում։ Պետք է մտածել նաև հանրապետության
վարչատերիտորիալ բաժանումը կատարելագործելու հարցի մասին։

Մենք պետք է առանձնակի ուշադրությամբ վերաբերվենք ազատվող կադ-
րերին աշխատանքի տեղավորելու ու նպատակամետ օգտագործելու հարցե-
րին։ Անհրաժեշտ է այդ գործը տանել աշխատանքային օրենսդրությանը հա-
մապատասխան և կուսակցական, սովետական ու արհմիութենական կազմա-
կերպությունների չթուլացող վերահսկողությամբ։

Հանրապետությունում ժողովրդական տնտեսության կառավարման վե-
րակառուցումը պետք է ուղեկցվի նաև արտասահմանյան երկրների պարտ-
նյորների հետ փոխշահավետ տնտեսական ու գիտատեխնիկական կապերի
ընդլայնումով։ Այս հարցում դրսևորվող պասիվությունն ու անվճռականությու-
նը անթույլատրելի են։

## ՀԱՂԹԱՀԱՐԵԼ ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ, ԿԱԴՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՁԵՎԱԽԵՂՈՒՄՆԵՐԸ, ՎԵՐԱԿԱՆԳՆԵԼ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ

Ընկերներ։

Մենք ապրում ենք շատ բարդ, բեկումնային փուլում։ Այժմ կարևոր է, որ
հանրապետական կուսակցական կազմակերպությունը կարողանա իրեն դըր-
սևորել որպես վերակառուցման ծրագրային նպատակների արտահայտիչ, դառ-
նա հասարակության եռանդուն առաջատար։ Մեզ անհրաժեշտ է արմատապես
վերակառուցել կուսակցական աշխատանքը, դրա կենտրոնում դնելով մար-
դուն՝ իր հասունացած պրոբլեմներով։

Դժվարությունն այն է, որ հանրապետությունում վերջին տարիներս էա-
կան ձևախեղումներ են տեղի ունեցել կուսակցական մոտեցումների, քաղա-
քական ու կազմակերպչական գործունեության բուն բովանդակության մեջ,
կադրային ասպարեզում, մասսաների հետ կուսակցական կոմիտեների, այդ
թվում՝ Կենտկոմի ունեցած կապերում։ Նույնիսկ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան
պլենումից հետո հանրապետական կուսակցական կազմակերպությունում գո-
յատևած ինքնագոհության ու ինքնահիացման մթնոլորտը հանգեցրեց նրան,
որ կուսակցական շատ կոմիտեներ նահանջեցին սկզբունքային քաղաքական
ու գաղափարական դիրքերից, խրվեցին վարչարարության ու պասիվության,
թղթաբարության ճահիճը։ Ղեկավար պաշտոններ զբաղեցնող մի շարք կուս-
անդամներ դուրս մնացին վերահսկողությունից ու քննադատությունից, սկսե-
ցին բացահայտորեն չարաշահել իշխանությունը։ Կազմավորվեց ղեկավարու-
թյանը նվիրված ֆունկցիոներների անվանացանկային մի պահունակ։
«Անվանացանկային» մոտեցման մեջ հաստատվեցին կուսակցական նոր-
մաներից բացահայտորեն շեղվող՝ «մեր մարդ», «հնազանդ կատարող», «հա-





մեմատաբար ազնիվ աշխատող» գնահատականները։ Անձնական բոլոր հատ-
կանիշներից նախ և առաջ սկսել էր գնահատվել նվիրումով «վեր» նայելու կա-
րողությունը։

Այս առումով հատկանշական է հանրապետության շինարարության
նախկին մինիստր Ռ. Մելիքյանի կարիերան։ Ճյուղը տարեցտարի ձախողում
էր պլանները, չէր ապահովում աշխատանքների անհրաժեշտ որակը, խիստ
հետ էր մնացել գիտատեխնիկական առաջադիմությունից, և հենց այդ դժվա-
րին պահին մինիստրի պաշտոնում առաջադրում են նախաձեռնությունից
զուրկ մի աշխատողի, որը կարողանում էր անհրաժեշտ պահին տալ «հաս-
տատ հավաստիացումներ», ստանձնել լավ «պարտավորություններ»։ Ոչ մի-
այն առաջադրում են, այլև պահում «ջրի երեսին», չնկատելով, որ բնագավա-
ռը ավելի ու ավելի է փոթորկվում, ի հայտ են գալիս նորանոր ճեղքվածքներ։
Մեզանում գրեթե կանոն էր դարձել՝ ստեղծել ղեկավարի կեղծ հեղինա-
կություն, չտեսնելու տալ նրա անբանությունը, սխալներն ու ձախողումները,
լիակատար լճացումը աշխատանքի հանձնարարված տեղամասում։

Կադրերի ընտրության և առաջքաշման գործում ցուցաբերված անսկըզ-
բունքայնությունն ու սուբյեկտիվիզմը հանգեցրին այն բանին, որ շատ դեպ-
քերում կուսակցության քաղկոմների ու շրջկոմների քարտուղարների պաշտո-
նում հայտնվում էին մարդիկ, որոնք չունեին ոչ քաղաքական ղեկավարի ըն-
դունակություններ, ոչ քաղաքացիական հստակ կենսադիրք, ոչ էլ պատշաճ
բարոյական հատկանիշներ։ Դրանցից են՝ Գ. Բարիկյանը, Ս. Դանիելյանը,
Ա. Ազիզյանը, Գ. Քոսակյանը, Վ. Բալայանը և ուրիշներ։ Նման կարգի կու-
սակցական ղեկավարների նկատմամբ թողտվությունը, ներողամտությունը
զգալի վնաս հասցրին և՛ այն շրջանների բարոյաքաղաքական կլիմային, որ-
տեղ նրանք աշխատում էին, և՛ ամբողջությամբ վերցրած հանրապետական
կուսակցական կազմակերպությանը։

Ինչպե՞ս կարող էր նման բան լինել։ Կարծում եմ, ձևախեղումները կադ-
րային քաղաքականության մեջ նախ և առաջ հետևանք էին Հայաստանի կոմ-
կուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի ու
նրա նախկին վարիչ Ք. Մանդալյանի արատավոր ոճի։ Մի՞թե գաղտնիք է, որ
կադրերը հաճախ ընտրվում էին թաքուն, առանց գործարար ու քաղաքական
հատկանիշները հաշվի առնելու։ Նրանց գործունեությունը կուսակցական վե-
րահսկողության չէր ենթարկվում, աչք էր փակվում կուսակցական կյանքի
նորմերի լուրջ խախտումների վրա։

Կարող են ասել, թե ես հիշատակում եմ վաղեմի փաստեր։ Դա անում
եմ ոչ պատահաբար։ Եթե մենք իրոք ուզում ենք արմատապես փոխել կադ-
րային քաղաքականությունը, ապա պետք է ազնվորեն ու սկզբունքայնորեն
խոստովանենք, որ այդ աշխատանքում մենք մեծապես հեռացել ենք լենին-
յան, բոլշևիկյան ավանդույթներից և այն վսեմ կողմնորոշիչներից, որ առաջ
է քաշել վերակառուցման ու դեմոկրատիայի ներկայիս կուսակցական կուրսը։
Մեր կուսակցական, սովետական, տնտեսական ակտիվը բացահայտորեն
պատրաստ չէր մարդկանց հետ անմիջական երկխոսության, քննադատությա-
նը սկզբունքորեն արձագանքելու, իրադրությունը սթափ գնահատելու, իր շուր-
ջը համախմբելու բոլոր նրանց, ովքեր պատրաստ էին իրականացնելու վերա-
կառուցումը հանրապետությունում ոչ թե խոսքով, այլ գործով։

Մենք չենք կարող ոչ մի քայլ առաջ շարժվել, նշվեց ՍՄԿԿ XXVII համա-
գումարում, եթե չսովորենք աշխատել նորովի, չկարողանանք հաղթահարել
քարացածությունն ու պահպանողականությունը՝ դրանց բոլոր դրսևորումներով
հանդերձ, եթե կորցնենք իրադրությունը սթափ գնահատելու, այն, ինչպիսին
որ կա, տեսնելու խիզախությունը։ Որպեսզի անպատասխանատվությունն անց-
յալի գիրկն անցնի, հարկավոր է կարգ դարձնել իրերն իրենց անուններով կո-
չելը, ամեն ինչի մասին անկեղծորեն դատելը։ Հարկավոր է վերջ տալ անտեղի
նրբանկատության վարժանքներին այնտեղ, որտեղ պետք է հանդես բերվեն
պահանջկոտություն ու ազնվություն, կուսակցական խիղճ։ Ոչ ոք իրավունք
չունի մոռանալու լենինյան խիստ նախազգուշացումը՝ «կեղծ ֆրազը, կեղծ
ինքնագովությունը բարոյական կործանում է, քաղաքական կործանման ան-
խուսափելի գրավականը»։

բանիմաց, թե՛ մտածողությամբ, թե՛ գործողություններով համարձակ մարդիկ, ոչ միայն պարզապես գրագետ, այլև գործի նկատմամբ շահագրգիռ կազմակերպիչներ։

Որտեղի՞ց գտնել այդպիսի կադրեր։ Մեզանում առաջացել է կադրային նոսրություն, մենք մեծ դժվարություններ ենք զգում նոր մարդկանց ընտրության տեսակետից։ Այստեղ անհնար է գործը գլուխ բերել առանց թարմ ուժի ներհոսի։ Բայց դրա համար ժամանակ է պետք, կադրերի պատրաստման ու դաստիարակման հետևողական, տքնաջան աշխատանք։ Իսկ ինչպե՞ս վարվել այսօր։

Ոմանց մեջ, երևում է, այն տպավորությունն է ստեղծվել, թե հանրապետությունում սկսվել է կադրերի հորիզոնական մեխանիկական տեղափոխություն կամ, ինչպես ժողովուրդն է ասում, դրանք մի աթոռից մյուսն են տեղափոխվում։ Դա ճիշտ չէ, ընկերներ։ Մենք անշեղորեն բռնել ենք արմատական լուծումների, կադրային ջոկատի զգալի նորացման ուղին։ Բայց միաժամանակ ձգտում ենք առավելագույնս օգտագործել առկա աշխատողներին՝ նրանց գործարար հատկանիշների լույս, սկզբունքային վերլուծության, ստեղծված իրավիճակը և մեր ռեալ հնարավորությունները հաշվի առնելու հիման վրա։ Օրինակ, այժմ մի շարք կուսակցական աշխատողների, որոնք իրենց դրսևորել են որպես հմուտ կազմակերպիչներ, վստահվել են ավելի բարդ, պատասխանատու աշխատամասեր։ Ես նկատի ունեմ նախ և առաջ Մ. Մկրտչյանին, որը գլխավորել է կուսակցության Լենինականի քաղկոմը և Մ. Մինասբեկյանին, որն ընտրվել է կուսակցության Երևանի քաղկոմի առաջին քարտուղար։ Փոքր-ինչ այլ մոտեցում է դրսևորվել ընկ. Մ. Մուրադյանի նկատմամբ։ Որպես Կենտկոմի քարտուղար նա զբաղվում էր Հայկոոպի գործունեությամբ, որը հանրապետության ամենաբարձիթողի տեղամասերից է։ Մենք էլ նրան այնտեղ ուղարկեցինք. թող ինքն անձամբ շտկի ստեղծված վիճակը, ճյուղը դուրս բերի փակուղուց։

Դեմոկրատական ուղիով, անվանացանկային շրջանակը խախտելով ընթացանք մենք վիճպետկոմի նախագահի թեկնածու ընտրելիս։ Առաջ քաշվեց ընկ. Լ. Դավթյանի թեկնածությունը, որը բարձր որակավորման տնտեսագետ է, վիճակագրության մասնագետ։ Թեկնածությունը արժանացավ հանրապետության պետպլանին առընթեր էկոնոմիկայի ու պլանավորման ինստիտուտի, որտեղ նա աշխատում էր երկար ժամանակ, կոլեկտիվի միահամուռ պաշտպանությանը։

Ես անկեղծ եմ խոսում ձեզ հետ, ընկերներ, քանի որ ուզում եմ, որ մենք բոլորս խորապես գիտակցենք գլխավորը. կադրային աշխատանքում միշտ, իսկ այժմ հատկապես, պահանջվում է որոնել ոչ ստանդարտ լուծումներ։ Մենք փնտրում ենք այդպիսի լուծումներ, դա դժվարին որոնում է և գուցե ոչ միշտ է այն մեզ հաջողվում։ Մեր՝ թե՛ Կենտկոմի, թե՛ տեղերի կուսակցական կոմիտեների խնդիրն է, որ այդ որոնումը կատարվի՝ հաշվի առնելով այսօրվա բարձր կողմնորոշիչները։ Միայն այսպես մենք կկարողանանք հասնել այն բանին, որ կարելի լինի վերակառուցման ավելի մեծ թվով իսկական նվիրյալներ ներգրավել կյանքի գործնական նորացման մեջ։ Եվ կվերացնենք կադրերի այն անբևակայելի աթուրման, որը մինչ այժմ իշխում է հանրապետությունում։

Հինգ տարում, օրինակ, սննդարդյունաբերության մեջ ձեռնարկությունների ղեկավար է նշանակվել 57 մարդ, բայց ընդամենը 9 մարդ է առաջ քաշվել աշխատավորական կոլեկտիվներից, մնացած բոլորը՝ դրսից։ Վերջին երկու տարում ազատվել է յուրաքանչյուր երրորդ սովխոզի դիրեկտորն ու կոլտնտեսության նախագահը։ Պատկերը նույնն է վերամշակող ձեռնարկություններում։ Այստեղ մասնագիտական կրթություն չունի յուրաքանչյուր երրորդ դիրեկտորը, իսկ գլխավոր ինժեներներից՝ յուրաքանչյուր երկրորդը։ Առհասարակ մեզ մոտ սովորական երևույթ է դարձել, երբ հացը թխում է իրավաբանը, լիմոնադի լցարկումը ղեկավարում է կոշկակարը, բանջարեղենի պահածոյացումը կազմակերպում է մանկավարժը։

Վիճակը բարվոք չէ կուսակցական օղակում։ Շրջկոմների աշխատողների ընդամենը 15 տոկոսն ունի կուսակցական-քաղաքական կրթություն. սա ամենացածր ցուցանիշն է երկրում։ Վերջին ժամանակներս ընտրված շրջկոմների ու քաղկոմների քարտուղարների մոտ 70 տոկոսը ռեզերվում չի եղել, նրանց գերակշիռ մեծամասնությունը աշխատանքի դպրոց չի անցել սկզբնական օղակում։ Կուսակցական շատ կադրեր չեն աշխատում իրենց վրա։ Հարցրեք, ե՞րբ են նրանք բացել ամսագրի թարմ համարը, եղել թատրոնում, գեղանկարչական ցուցահանդեսում, և դուք անմխիթարական պատասխան կստանաք. մենք, իբր, գործից աչք չենք բացում։

Մենք անչափ ծանր, անդյուրաշարժ, բարձիթողի կադրային վիճակով մոտեցանք քաղաքական համակարգի ռեֆորմին։ Այս տխուր փաստի հրապարակային խոստովանությամբ հազիվ թե գործին օգնես։ Այսօր իսկական քաղաքական հասունությունն այն է, որ համարձակորեն, վճռականորեն փոխվեն կադրային քաղաքականության բուն սկզբունքները։ Այստեղ առաջնահերթ նշանակություն է ստանում կադրային հարցերը լուծելիս լիակատար հրապարակայնության, ընտրովիության և ներքևից եկող լայն վերահսկողության զուգորդման մասին XIX կուսկոնֆերանսի հիմնադրույթների իրականացումը։

Կուսակցական ապարատի առաջիկա վերակառուցումը մենք պետք է օգտագործենք առաջին հերթին բանիմաց, անհրաժեշտ բարոյական հատկություններ, կյանքի և կուսակցական-քաղաքական փորձ, տեսական պաշար ունեցող, աշխատանքի քաղաքական մեթոդների անցնելու ընդունակ կոմունիստներով այն համալրելու համար։

Եթե ելնենք մեր հանրապետության առանձնահատկությունից, ապա անհրաժեշտ է նախ և առաջ վերանայել որպես կուսակցության տեղական շրջկոմների ու քաղկոմների քարտուղարներ մայրաքաղաքից ընկերներ պարտադրելու պրակտիկան, ընդգծում եմ՝ պարտադրելու։ Վարչական թելադրանքի շրջանում հաստատված այս պրակտիկան հանգեցրել է տխուր, եթե չասենք ավելին, հետևանքների. մայրաքաղաքից առաջ քաշվածներից ոմանք իրենց ժամանակավոր մարդ են համարում շրջանում, ավելի շատ հոգ են տանում արտաքին հեղինակության, անձնական բարօրության, քան գործերի մասին։

Եթե մոտեցումը հնացել է, իրեն չի արդարացնում, ապա այն պետք է առանց տատանվելու դեն նետել։ Եվ գտնել նոր, այսօրվա պահանջներին, նորացման ու դեմոկրատացման խնդիրներին ավելի համապատասխանող եղանակներ։ Մենք արդեն այսպես ենք վարվել Կիրովականում, Սիսիանում, Ապարանում նոր քարտուղարներ ընտրելիս։ Տեղի ընկերներին ուղղակի ասել ենք. առաջարկեք ձեր թեկնածությունները, ինքներդ գնահատեք և ինքներդ ընտրեք նրան, ով ավելի արժանի է։ Գուցեև ամեն ինչ չէ, որ մինչև վերջ հաջողվել է։ Բայց կասկած չի հարուցում մի բան. ոչ թե մայրաքաղաքից տրված ցուցումով, այլ ազատ, կոմունիստների կամքի ոչնչով չկաշկանդված դրսևորման հիման վրա անցկացված ընտրությունները տեղի ակտիվի համար դարձել են դեմոկրատացման ու հրապարակայնության գործուն դաս։ Կոմունիստները սկզբունքայնորեն, բազմակողմանիորեն գնահատել են ապագա ղեկավարներին, իսկ իրենք՝ քարտուղարները, ավելի մեծ պատասխանատվությամբ են մոտեցել իրենց նոր դիրքին. չէ որ իրենք այդտեղ պետք է ապրեն, ուստի հարկավոր է առաջին իսկ քայլերից թանկ գնահատել արած պատիվը, հայրենակիցների վստահությունը։ Պրակտիկա է դառնում մի քանի թեկնածուի առաջադրումը կուսակցական կոմիտեների քարտուղարներ ընտրելիս։

Վաղուց է հասունացել խնամառուական հոգեբանությունը արմատախիլ անելու անհրաժեշտությունը։ Առաջին քարտուղարներից շատերը, հազիվ աշխատանքի անցած, անմիջապես սկսում են ահռելի ջանքեր գործադրել, որպեսզի որքան կարելի է շուտ Երևանից օգնության ծրագիր պոկեն շրջանի համար։ Քանի՜ այդպիսի ծրագիր է ընդունվել Թալինի, Մարտունու, Մասիսի և այլ շրջանների համար՝ աղմկալի ազդարարված, ինքնառեկլամով օծված. «ես ճարեցի», «իմ շնորհիվ հիմա ամեն ինչ կստանաք»։ Բայց ծափահարությունների որոտը դեռ չլռած՝ ծրագիրը հանգիստ նիրհել է դարակում։ Իսկ լճացումը նշված շրջաններում ինչպես եղել է, այնպես էլ շարունակում է մնալ մինչև օրս։

Հանուն ճշմարտության պետք է խոստովանեմ, որ ոչ բոլոր շրջանային աշխատողներն են ակնածական հույսով մայրաքաղաքից երկնային մանանա

ակնկալել։ Նրանց մեջ եղել են նաև գործի մարդիկ, պրոբլեմների նկատմամբ իրենց հայացքը, իրենց խելամիտ, սթափ մոտեցումն ունեցող մարդիկ։ Որպես օրինակ կարող եմ նշել կուսակցության Ախուրյանի շրջկոմի նախկին առաջին քարտուղար Մ. Մկրտչյանին։ Ախուրյանում գործում էին առանց ավելորդ աղմուկի, բայց հիմնավորապես, հետևողականորեն և հասան նկատելի արդյունքների։ Գյուղերը նորացան, կայուն կերպով զարգանում է հողագործությունը, աճում է բերքը։ Անգամ այնպիսի բարդ ճյուղ, ինչպիսին անասնապահությունն է, որակապես վերափոխվել է, հեղինակություն նվաճել Ախուրյանի երիտասարդության մեջ։ Շրջանի օրինակելի դարձած ֆերմաներում հիմա նոր աշխատողներին մրցույթով են ընդունում։

Ահա նմա՛ն փորձը մենք պետք է այսօր խրախուսենք, համընդհանուր սեփականություն դարձնենք։

Չեմ կարող չխոսել ևս մեկ երևույթի մասին, որը կաշկանդում է մեր ուժերն ու հնարավորությունները։ Ես նկատի ունեմ հանրապետությունում առկա այն գոտիները, որոնք փակ են քննադատության համար։

Մինչև վերջին ժամանակներս այդպիսի խուլ պատի հետևում էր աշխատում կուսակցության Լենինականի քաղկոմը։ Ապարատը թաղվել էր թղթաբանության մեջ, տենդագին կերպով այս ու այնտեղ ցուցումներ էր առաքում։ Մինչդեռ քաղաքում գնալով մեծանում էին սոցիալ-կենցաղային պրոբլեմները, տեղում դոփում էին արդյունաբերական ձեռնարկությունները, ցածր էր գլորվում շինարարության որակը, աճում էին հափշտակություններն ու սպեկուլյացիան։ Ինչպիսի՜ ջանքեր հիմա կպահանջվեն մարդկանց գործի մղելու, նրանց հոգում վստահություն, հանգստություն, ստեղծագործական տրամադրություն արթնացնելու, վերակառուցման խնդիրները կոնկրետ գործողությունների վերածելու համար։

Այսօր մոտավորապես նույն դժվարությունները, եթե ոչ ավելին, կանգնած են կուսակցության Երևանի քաղկոմի առջև։ Պարզվում է, որ մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունը մենք հաջողացրել ենք զերծ պահել անգործության համար թեկուզ ամենաչնչին հանդիմանությունից։ Երեք տարի առաջ ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը Երևանի քաղաքային տնտեսության զարգացման միջոցառումների մասին, մի շատ տարողունակ, պատասխանատու խնդիր առաջադրող որոշում, որով նախատեսվում է մինչև 1990 թվականը լուծել հանրապետության մայրաքաղաքի սոցիալական ու տնտեսական հիմնական խնդիրները։ Կուսակցության քաղկոմում և քաղսովետի գործկոմում աղմուկով ազդարարեցին. նախանշված է մեծ ծրագիր, որի կատարումը բոլորի ու յուրաքանչյուրի պատվի գործն է։ Ամեն ինչ դրանով էլ ավարտվեց։

Միայն այս տարվա ապրիլին Երքաղկոմում ուշքի եկան և պլենումում քննարկեցին որոշման կատարման ընթացքը։ Քննարկումը ստացվեց ձևական։ Ի դեպ, քննարկմանը բնավ էլ անհրաժեշտ տոնայնությունը չտվեց քաղսովետի գործկոմի նախագահ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու ընկ. Է. Ավագյանի ելույթը, որը պատասխանատվություն է կրում նախանշված անելիքների ձախողման համար։ Իսկ ձախողված է, ինչպես հիմա կարելի է դատել, շատ բան։ Միայն բնակարանային շինարարության դանդաղ տեմպերի պատճառով 2,5 հազար ընտանիքներ արդեն զրկվել են նոր բնակարաններ ստանալու հնարավորությունից։

Ահա թե ինչի ենք մենք հանգում, ստեղծելով քննադատության, հրապարակայնության, հասարակական վերահսկողության համար փակ գոտիներ։ Իսկ չէ որ մեզանում այդպիսի գոտիներ են եղել մի ամբողջ շարք կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպություններ, մինիստրություններ ու գերատեսչություններ։

Շատ թերություններից ու վրիպումներից մենք կարող էինք խույս տալ, եթե մտրտականորեն աշխատեին մեր սկզբնական կուսկազմակերպությունները, եթե նրանք ոչ թե խոսքով, այլ գործով դրսևորեին իրենց որպես կոլեկտիվի քաղաքական միջուկ։ Այժմ կուսակցական կազմակերպություններում տեղի են ունենում հաշվետվություններ ու ընտրություններ։ Դա առաջին խոշոր քաղաքական կամպանիան է XIX կոնֆերանսից հետո։ Այն կոչված է ա-



ռավելագույնս նպաստելու կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, նրանց գործունեության մեջ ղեկավարման քաղաքական մեթոդների հաստատմանը, ամբողջ ներկուսակցական կյանքի դեմոկրատացմանը։ Կուսակցական խմբերում, արտադրամասերում և որոշ սկզբնական կազմակերպություններում կայացած ժողովները ցույց են տալիս, որ կոմունիստները ձգտում են վերաիմաստավորել աշխատանքի ձևերն ու մեթոդները, տիրապետել դեմոկրատիայի ամբողջ զինանոցին։ Մեզ այսօր հարկավոր է անկեղծ, շիտակ և ազնիվ խոսակցություն այն մասին, թե ինչն է արգելակում վերակառուցմանը, խանգարում լավագույն լուծումների որոնմանը, կուսկազմակերպությունների գաղափարական կյանքի հարստացմանը, իներցիայի եռանդագին հաղթահարմանը։

Որ կոմունիստները, աշխատավորները ակնկալում են այդպիսի խոսակցություն, վկայում է նրանց աշխույժ արձագանքը ներկա պլենումից առաջ հրապարակված Հայաստանի կոմկուսի Կենտկոմի դիմումին։ Միայն Կենտկոմի հասցեով ստացվել է ավելի քան 2000 նամակ, առաջարկություն և դիտողություն. այդտեղ գործարար, շահագրգիռ կերպով շոշափվել են հրատապ, կենսահույզ շատ հարցեր։ Այդ նամակները մեզ հսկայական օգնություն ցույց տվեցին պլենումը նախապատրաստելիս։ Աշխատավորների առաջարկությունների ու դիտողությունների մի մասը արտացոլված է պլենումի զեկուցման մեջ, մնացածների կապակցությամբ մոտ ժամանակներս կոնկրետ միջոցներ կձեռնարկվեն։ Մենք այսուհետ ևս կշարունակենք ուղղակի երկխոսությունը մարդկանց հետ, հասունացած հարցերը լուծելիս նկատի կունենանք նրանց կարծիքը։

Խիստ կարևոր է մեծացնել պահանջկոտությունը ժողովրդական դեպուտատների սովետների, նրանց գործադիր մարմինների նկատմամբ։ Այժմ խնդիրն այսպես է դրվում. կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը պետք է իրականացվի նախ և առաջ սովետների միջոցով։ Սա սկզբունքորեն նոր մոտեցում է, որն իսկական ժողովրդապետություն է երաշխավորում։ Անհրաժեշտ է ռեալ կերպով ընդլայնել սովետների իրավունքներն ու լիազորությունները, ինչպես առաջարկվեց XIX կուսկոնֆերանսի կողմից։ Միանգամայն անհանդուրժելի է, երբ սովետները խորամուխ չեն լինում աշխատավորների ամենօրյա կարիքներին, պատշաճ կերպով չեն ղեկավարում բնակչության առևտրական, կենցաղային, տրանսպորտային, բժշկական սպասարկումը, թույլ են ազդում կենսականորեն կարևոր այնպիսի պրոբլեմների լուծման վրա, ինչպիսիք են մարդկանց ապահովումը բնակարանով, ջրով, մսուր-մանկապարտեզով։

Ուժեղացնել պայքարն այն ամենի դեմ, ինչը խանգարում է սովետների հնարավորությունների լրիվ բացահայտմանը՝ այս բանը պարտավոր է անել նախ և առաջ հանրապետության Գերագույն սովետի նախագահությունը (նախագահ՝ ընկ. Հ. Ոսկանյան)։ Սովետները վերակառուցման համար, հրապարակայնության ու դեմոկրատիայի ընդլայնման համար պայքարի առաջատար, վճռական օղակներից են։ Եվ մենք պետք է նրանց աշխատանքը առանց հապաղելու բարձրացնենք այդ կարևոր խնդիրների լուծման աստիճանին։

Արմատական շրջադարձ է հարկավոր արհմիությունների աշխատանքում։ Առայժմ շատ կոմիտեներ գործում են անտարբեր, աննախաձեռնողաբար։ Մենք այսօր պետք է ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. Մ. Հարությունյանին ուղղակի ասենք. հարկավոր է ավելի ակտիվորեն շրջվել դեպի մարդկանց ամենօրյա կարիքները։ Ձեռնարկությունների ինքնուրույնության, աշխատավորական կոլեկտիվներում ինքնակառավարման սկզբունքների հաստատման պայմաններում արհմիությունները պետք է լինեն աշխատավորների դեմոկրատական իրավունքների հուսալի երաշխավորներ, ակտիվորեն ներգործեն նրանց մտքի վրա, օգնեն իրականում գործնականորեն դառնալու արտադրության տերեր։

Այսօր կուսակցական լուրջ ուշադրություն է պահանջում մեր երիտասարդությունը։ Մենք երբեմն մոռանում ենք կուսակցական մոտեցման էությունը՝ վստահել երիտասարդությանը, ստուգել նրանց կոնկրետ գործերով, անհրաժեշտ պայմաններ ստեղծել վերակառուցմանը պատանիների ու աղջիկների գործնական մասնակցության համար։ Կոմերիտական շատ կոմիտեներ խորա-

վա առաջին կիսամյակում դատական մարմինները լրացուցիչ քննության են վերադարձրել 160 քրեական գործ, թեև այդ բոլոր գործերի առթիվ դատախազները մեղադրական եզրակացությունները հաստատած են եղել։ Ցածր է նաև բուն դատաքննության մակարդակը։

Կարծում եմ, որ այս վիճակի հետ այլևս հաշտվել չի կարելի։ Այժմ նշանակված է ներքին գործերի նոր մինիստր՝ ընկ. Հ. Հարությունյանը։ Նրան հապաղելու ժամանակ չի տրված։ Հարկավոր է անմիջապես աշխատել նորովի, վճռականորեն ձեռնամուխ լինել գործին։

Անհապաղ և արմատական վերակառուցում է հարկավոր հանրապետության դատախազությունում։ Այս մասին ընկ. Ս. Օսիպյանին ասվել է։ Ըստ երևույթին, ընկերներ, մեզ հարկավոր է ուժեղացնել ոչ միայն դատախազական հսկողությունը, այլև դատախազների նկատմամբ կուսակցական հսկողությունը։

Իրավապահ մարմիններում սուր պրոբլեմներ այնքան են կուտակվել, որ, կարծում եմ, նրանց աշխատանքի հարցը հատուկ քննության է արժանի Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում, իսկ հնարավոր է՝ նաև կուսակցական ակտիվներից մեկում։

Ընկերներ։

Մենք համարձակորեն ձեռնամուխ եղանք մեր գործերի քննադատական վերանայմանը։ Չենք թաքցնի՝ առջևում մեզ շատ լարված, շատ բարդ աշխատանք է սպասվում։

Ավարտելով զեկուցումը, կցանկանայի ընդգծել ևս մեկ կարևոր հանգամանք։ Մեր հետագա կուսակցական քաղաքականության ակտիվությունը այսօր վճռականորեն կախված է այն բանից, թե մեզանից յուրաքանչյուրը՝ շարքային կոմունիստից մինչև կուսակցական ղեկավար, որքան ակտիվորեն ու պատասխանատվությամբ կգործի հանձնարարված տեղամասում, թե մենք բոլորս որքան հաստատակամ և հետևողականորեն կապահովենք բարձր պահանջկոտության, ձեռք բերվածով չբավարարվելու, թերությունների նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտը, թե ինչպիսին կլինի մեր ռեալ ազդեցությունը այնպիսի կենսահույզ հարցերի լուծման վրա, որոնցից կախված են աշխատավորների տրամադրությունն ու բարօրությունը։

Մեր պլենումի նախօրեին մեզ զանգահարեց Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը։ Նա մանրամասն հետաքրքրվեց հանրապետության գործերի վիճակով, մեծ ուշադրությամբ վերաբերվեց իրադրության առողջացման ուղղությամբ մեր գործադրած ջանքերին, օգտակար խորհուրդներ տվեց XIX կուսակցական կոնֆերանսի հիմնադրույթների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների իրագործման համար։ Միխայիլ Սերգեևիչը գիտե, որ մեզ մոտ այսօր պլենում է, նա հավանություն տվեց այն բանին, որ մենք պլենումի քննարկմանն ենք դնում այսպիսի հրատապ մի հարց, մեզ մաղթեց հաջող և արգասավոր աշխատանք։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նման գործարար, շահագրգիռ աջակցությունը մեզ բոլորիս պարտավորեցնում է էլ ավելի հաստատակամ ու եռանդուն աշխատանք տանել վերակառուցման ոգով։

Մեր ուժերի համախմբումը, ակտիվության ու հարձակողականության բարձրացումը գրավական են այն բանի, որ հանրապետությունում վերակառուցումը թափ կառնի, կտա ռեալ, շոշափելի արդյունքներ։

---

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերի 13-ի պլենումի որոշումը

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅՈՒՄ, ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ ԼՃԱՑՄԱՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ՀԱՂԹԱՀԱՐՄԱՆ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԳԱՂԱՓԱՐԱԲԱՐՈՅԱԿԱՆ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌՈՂՋԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լսելով և քննարկելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանի «Էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում լճացման երևույթների հաղթահարման և հանրապետությունում գաղափարաբարոյական իրադրության առողջացման ուղղությամբ կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» զեկուցումը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո ՀԿԿ Կենտկոմի բյուրոյին, քարտուղարությանը չի հաջողվել քաղաքական նոր մոտեցումներ մշակել տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում հասունացած սուր պրոբլեմների լուծման նկատմամբ և իրացնել դրանք, հաղթահարել անտարբերության և ինքնահանգստացման տրամադրությունները։ Հետևություններ չեն արվել ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում հանրապետական կուսակցական կազմակերպության ու նրա ղեկավարության հասցեին հնչած պահանջկոտ ու արդարացի քննադատությունից։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն չի կարողացել գլխավորել նորացման պրոցեսը, կազմակերպչական և քաղաքական աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները չեն համապատասխանեցվել մեր հասարակության վերակառուցման ու դեմոկրատացման խնդիրներին։ Կոպիտ վրիպումներ ու սխալներ են թույլ տրվել կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում։ Կուսակցության քաղկոմները, շրջկոմները դանդաղ են յուրացնում ղեկավարման քաղաքական մեթոդները։ Որակապես նոր խնդիրների լուծմանը պատրաստ չէին կուսակցական, սովետական և տնտեսական շատ ղեկավարներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը գտնում է, որ Կենտկոմի բյուրոն, հանրապետության Մինիստրների խորհուրդը թերագնահատել են կուտակված սոցիալական պրոբլեմների լուծման կարևորությունը։ Միութենական միջին ցուցանիշների համեմատությամբ թերացում է թույլ տրվել բնակչությանը բնակարանով, առողջապահության, առևտրի, կենցաղային սպասարկման օբյեկտներով, նախադպրոցական հիմնարկներով ապահովելու գործում։ Հիմնական սոցիալական կարիքների բավարարման գործում առանձին քաղաքների ու շրջանների միջև խզումը տատանվում է մի քանի անգամ։

Անբավարար վիճակ է ստեղծվել բնակչությանը սննդամթերքով ապահովելու գործում։ Գյուղատնտեսական մթերատեսակների մեծ մասի արտադրության ուղղությամբ պարենային ծրագրի առաջադրանքները չեն կատարվում։ Թույլ են օգտագործվում անասնապահական մթերքների, բանջարեղենի ու մրգի արտադրությունն ու մթերումները ավելացնելու առկա հնարավորությունները։

3. Մինիստրների խորհրդին, պետպլանին, պետշինին, պետագրոարդին, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին՝ առանձնակի նշանակություն տալով բնակարանային պրոբլեմի լուծմանը, սկսած 1989 թվականից նախատեսել բնակարանային շինարարության տեմպերի արագացում 1,5—2 անգամ, այդ նպատակով կապիտալ ներդրումները, նյութական և աշխատանքային ռեսուրսները հատկացնել լրիվ ծավալով: Առանձնակի ուշադրություն նվիրել անհատական և կոոպերատիվ շինարարության ընդլայնմանը, դրա համար առավելագույնս օգտագործել ձեռնարկությունների ու կազմակերպությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների բոլոր առկա ռեզերվներն ու հնարավորությունները: Հասնել այն բանին, որ 1993 թվականին բնակարանով ապահովվեն մինչև 1987 թվականի սկիզբը հերթագրված մարդիկ, ինչպես նաև խարխուլ և վթարային տներում ապրողները:

ՀԱՄԽ-ին, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ ապահովել բնակարանային օրենսդրության անշեղ կատարումը, սոցիալական արդարությունն ու լայն հրապարակայնությունը հերթագրման ու բնակարանների բաշխման գործում:

Մինիստրների խորհրդին և Երքաղսովետի գործկոմին՝ նախատեսել և իրականացնել Երևանի Կոնդ թաղամասում ապրող մարդկանց բնակարանով ապահովելու միջոցառումներ:

4. Մինիստրների խորհրդին, պետպլանին, պետագրոարդին, բնակկոմունտնտմինին, ջրտնտմինին, Հայգլխջրշինին, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին՝ մշակել և առաջիկա տարիներին իրականացնել հանրապետության բնակչությանը խմելու ջրով ապահովելու ծրագիր, և առաջին հերթին՝ Երևան, Լենինական, Կիրովական, Արարատ, Դիլիջան քաղաքներում: Լրացուցիչ միջոցառումներ իրականացնել ջրմուղ տնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ: Անհետաձգելի միջոցներ ձեռնարկել ջրի կորուստները կրճատելու, գործող ջրմուղ ցանցերը նորոգելու և վերականգնելու համար: Ամենակարճ ժամկետներում քննարկել և միջոցներ ձեռնարկել արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական պրոցեսները տեխնիկական ջրի օգտագործման փոխադրելու նպատակով, խստորեն վերահսկել նրանց կողմից լիմիտային կարգապահության պահպանումը:

5. Մինիստրների խորհրդին, պետպլանին, հանրապետության մինիստրություններին ու գերատեսչություններին՝ ամբողջ կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության առանցքը դարձնել էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշումը, համապատասխան փոփոխություններ նախատեսելով 1989—1990 թվականների պլաններում, հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1991—1995 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում: Ապահովել բնակչության դրամական եկամուտների ու ծախսերի հաշվեկշռություն, հասնել որակապես նոր կենսամակարդակի: Մշակել և իրականացնել գյուղի սոցիալական վերափոխման, գյուղի աշխատավորների աշխատանքի ու կյանքի պայմանների բարելավման նպատակային ծրագիր: Դրան հատկացնել անհրաժեշտ միջոցներ ու նյութական ռեսուրսներ:

Տեղական սովետների գործկոմների հետ համատեղ մշակել և իրականացնել լրացուցիչ միջոցառումներ ժողովրդական սպառման ապրանքների ծավալների մեծացման, տեսականու ընդլայնման և որակի բարձրացման համար: Բարձրացնել բնակչության առևտրական, կենցաղային, բժշկական և այլ սպասարկումների մակարդակը: Անհետաձգելի միջոցներ ձեռնարկել քաղաքային տրանսպորտի աշխատանքը բարելավելու նպատակով: Լուրջ ուշադրություն նվիրել սպասարկման ոլորտի նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, հասնել նրա որակապես նոր մակարդակի: Վճռական պայքար մղել այդ ոլորտներում լայն տարածում գտած բացասական երևույթների դեմ:

6. Մինիստրների խորհրդին, բնությունպետկոմին, մինիստրություններին ու գերատեսչություններին, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին՝ մշակել և իրականացնել հանրապետության էկոլոգիական իրադրության առողջացման համակողմանիորեն հիմնավորված ծրագիր, որը խարսխվեր հեռանկարային սոցիալ-տնտեսական զարգացման ընդհանուր կոնցեպցիայի վրա: Առանձնակի ուշադրություն նվիրել բնապահպանման օբյեկտների շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումների իրացմանը: Անթույլատրելի համարել դրանց հանձնման ժամկետների ձախողումները:



Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ խիստ վերահսկողություն հաստատել Սևանա լճի պահպանման և էկոլոգիական մաքրության ապահովման, Հրազդանի ՊՇԷԿ-ի լրացուցիչ հզորությունների գործարկման արագացման և առաջիկա երեք տարում Հայաստանի ատոմակայանի շահագործման դադարեցման հետ կապված միջոցառումների իրականացման, այնպիսի պայմանների ստեղծման նկատմամբ, որոնք բացառեն քիմիական և ցեմենտի արդյունաբերության ձեռնարկությունների կողմից շրջակա միջավայրի աղտոտումը: Հասարակայնությանը սիստեմատիկաբար ինֆորմացիա տալ բնապահպանական միջոցառումների իրականացման ընթացքի մասին:

7. Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին, հանրապետության պետպլանին՝ մինիստրություններին ու գերատեսչություններին՝ վերանայել աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների օգտագործման, արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացման, արտադրողական ուժերի զարգացման ու տեղաբաշխման բոլոր առկա հեռանկարային ծրագրերը, դրանց հիմքում լիովին դնել ինտենսիվ տնտեսավարման սկզբունքները, ժողովրդական տնտեսության արդյունավետ ու հաշվեկշիռ զարգացման խնդիրները: Իրականացնել հանրապետության էկոնոմիկայի ինտենսիվացման գործում բեկում ապահովող փոխկապակցված միջոցառումների համալիրը: Այս նպատակով անհրաժեշտ համարել «Արդյունավետություն—2000» նպատակային կոմպլեքսային ծրագրի մշակումը ճյուղային և տարածքային տեսանկյունից և այն դնել 13-րդ և 14-րդ հնգամյա պլանների կազմման հիմքում:

8. Պետպլանին, գիտությունների ակադեմիային, կրթմինին՝ ՍՍՀՄ համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների, գիտահետազոտական և նախագծատեխնոլոգիական ինստիտուտների հետ համատեղ կազմել գիտատեխնիկական առաջադիմության կառավարման ամբողջական ռեգիոնալ մեխանիզմ՝ ծրագրանպատակային մեթոդների և նոր կազմակերպական կառուցվածքների հիման վրա:

Խորապես վերլուծել տնտեսավարման նոր պայմանների ազդեցությունը գիտատեխնիկական առաջադիմության արագացման վրա: Արդյունաբերության մեջ կառուցվածքային նոր վերափոխումներ ապահովել առաջատար տեխնոլոգիաների՝ ռադիոէլեկտրոնիկայի, կառավարման ու կապի համակարգերի ու համալիրների, հաշվողական ու լազերային տեխնիկայի, օպտաէլեկտրոնիկայի, ժամանակակից սարքաշինության, կենսատեխնոլոգիայի նվաճումները տիրապետելու բազայի վրա: Միջոցառումներ իրականացնել արտադրության մեջ ավարտուն մշակումների արմատավորումն արագացնելու, հանրապետությունում ստեղծվող գիտատեխնիկական պաշարը նյութականացնելու ուղղությամբ, նպատակ ունենալով ընդլայնել գիտաարդյունաբերական վերջնական արտադրանքի ծավալներն ու անվանացանկը: Կոնկրետ առաջարկություններ նախապատրաստել անարդյունավետ և անհեռանկարային արտադրությունների սահմանափակման, մի շարք ձեռնարկությունների վերապրոֆիլավորման նպատակով, որոնց արտադրանքը դժվարությամբ է սպառողների շուկաներ գտնում: Տրնտեսական աճի նոր որակի ապահովման համար մշակել մեքենաշինական համալիրն արդիականացնելու և տեխնիկապես վերազինելու, ձեռնարկությունների միջճյուղային և ներճյուղային մասնագիտացումն ու կոոպերացումը զարգացնելու, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը բարձրացնելու և նորացումն արագացնելու ծրագիր:

9. Հանրապետության Մինիստրների խորհրդին, պետպլանին, պետշինին (ընկ. Բ. Վ. Արծրունի)՝ վճռական բեկում մտցնել կապիտալ շինարարության մեջ:

Կազմել շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության բազայի զարգացման 1989—1990 թվականների և 13-րդ հնգամյակի կոմպլեքսային հասցեագրված ծրագիր, հաշվի առնելով շինարարության, շուկայի պահանջմունքները և ժողովրդական տնտեսության մյուս կարիքները: Բարձրացնել կարգուկանոնն ու կազմակերպվածությունը շինարարական կոնվեյերի բոլոր տեղամասերում, արմատապես բարելավել նախագծանախահաշվային գործը և շինմոնտաժային աշխատանքների որակը: Ապահովել շինարարական համալիրի նոր կառուցվածքի արդյունավետ գործառությունը, հասնել պլանային առաջադրանքների պարտադիր կատարման, օբյեկտների ու կարողությունների ժամանակին գործարկման:

10. ՀԿԿ Կենտկոմի բյուրոյին, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ ուժեղացնել կուսակցական կոմիտեների, մինիստրությունների ու գերատեսչությունների վերահսկողությունը և բարձրացնել նրանց պատասխանատվությունը տնտեսական

ռեֆորմը իրականացնելու, նրա հիմնական սկզբունքները յուրաքանչյուր աշխատատեղ հասցնելու, ձեռնարկությունների ինքնուրույնությունն ընդլայնելու և նրանց պատասխանատվությունը բարձրացնելու համար՝ պետական ձեռնարկության մասին ՍՍՀՄ օրենքի պահանջներին լիովին համապատասխան:

Մինիստրների խորհրդին, պետպլանին, պետմատին, ֆինանսների մինիստրությանը, մյուս տնտեսական գերատեսչություններին՝ կոնկրետ միջոցներ ձեռնարկել պլանային աշխատանքի վերակառուցումն արագացնելու, արտադրամիջոցների մեծածախ առևտրի անցնելու, հաշվարկային համակարգի արդյունավետ գործառնություն ապահովելու համար: Լրացուցիչ միջոցառումներ մշակել և իրականացնել ժողովրդական տնտեսության ֆինանսական դրության առողջացման, դրամաշրջանառության ամրապնդման նպատակով:

Մինիստրների խորհրդին, ՀԱՄԽ-ին, պետպլանին, աշխպետկոմին՝ անհետաձգելի միջոցներ ձեռնարկել աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, աշխատանքի տեղավորման ճկուն համակարգի ստեղծման, բնակչության վերապատրաստման և մասնագիտական կողմնորոշման համար: Խորապես վերլուծել հանրապետությունում տիրող ժողովրդագրական իրադրությունը, մշակել հեռանկարային նոր ժողովրդագրական քաղաքականություն՝ հաշվի առնելով յուրաքանչյուր քաղաքի ու շրջանի, յուրաքանչյուր բնակավայրի կոնկրետ առանձնահատկությունները:

11. Վերակառուցման գաղափարախոսական ապահովման գործում Կենտկոմի բյուրոյի, կուսակցության քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ գործը համարել հանրապետությունում տիրող գաղափարաբարոյական կլիմայի առողջացումը, աշխատավորության մեջ մարքս-լենինյան աշխարհայացքի, քաղաքական բարձր կուլտուրայի, հասարակական երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման, ակտիվ կենսադիրքորոշման, քաղաքացիական վսեմ հատկանիշների ձևավորումը: Անհետաձգելի միջոցներ ձեռնարկել գաղափարախոսական, քաղմասսայական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման, մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի ներգործունության ու օպերատիվության ուժեղացման, քաղաքական ուսուցման, դասախոսական պրոպագանդայի, միասնական քաղօրերի արդյունավետության բարձրացման ուղղությամբ, գտնել գաղափարախոսական ներգործության նոր ձևեր ու միջոցներ, վճռականորեն ձերբազատվել մասսաների հետ տարվող քաղաքական աշխատանքի քարացած ձևերից: Քաղդաստիարակչական աշխատանքի կենտրոնը տեղափոխել անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներ:

Ծավալել սոցիոլոգիական հետազոտություններ, ուսումնասիրել հասարակական կարծիքը, բնակչությանը ժամանակին ինֆորմացիա տալ բոլոր օրախնդիր հարցերի վերաբերյալ, վճռական պայքար մղել ամեն կարգի սանկոսների ու հերյուրանքների դեմ, լայնորեն կիրառել իրենց արդարացրած երկխոսությունները հեռուստատեսությամբ, բոլոր ատյանների ղեկավարների հանդիպումները ձեռնարկություններում, կազմակերպություններում:

Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, բոլոր գաղափարախոսական հիմնարկներին՝ էապես բարելավել աշխատավորների, հատկապես երիտասարդության, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը, ձևավորել ազգամիջյան շփման կուլտուրա: Ամրապնդել ինտերնացիոնալիստական ավանդույթները, հետևողականորեն վերացնել մեր ժողովրդի արմատական ազգային շահերին հակասող ազգային եսասիրությունը, սնապարծությունն ու ներփակությունը: Ըստ ամենայնի զարգացնել տնտեսական ու մշակութային կապերը եղբայրական միութենական հանրապետությունների հետ:

Միջոցներ ձեռնարկել արտագաղթի պրոցեսները կասեցնելու համար, որոնք ապակայունացնող ազդեցություն են գործում ռեգիոնի իրադրության վրա, առավելագույնս հոգատարություն ցուցաբերել հանրապետության յուրաքանչյուր ընտանիքի, յուրաքանչյուր քաղաքացու նկատմամբ, անկախ ազգային պատկանելությունից:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոյին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը, Մինիստրների խորհրդին՝ ուժեղացնել Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների իրականացման աշխատանքը, ըստ ամենայնի զարգացնել սոցիալ-տնտեսական ու մշակութային կապերը ԼՂԻՄ-ի հետ:

12. Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, հասարակական կազմակերպություններին՝ արմատապես վերակառուցել աշխատավորների,



հատկապես մատաղ սերնդի, բարոյական դաստիարակության աշխատանքը: Վճռականորեն հանդես գալ մեր հասարակությանը խորթ երևույթների՝ սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, սպեկուլյացիայի, հովանավորչության, սոցիալական արդարության սկզբունքների խախտումների դեմ:

Բոլոր աշխատավորական կոլեկտիվներում ստեղծել հասարակական դատապարտման մթնոլորտ մեր բարոյականության նորմերը խախտողների շուրջ, հետևողականորեն և նպատակասլաց կերպով պայքար մղել քաղքենիության դրսևորումների, սպառողական հոգեբանության, պորտաբուծության դեմ:

Հանրապետության գաղափարաբարոյական կլիմայի առողջացման, ճգնաժամային իրավիճակից նրա դուրսբերման, աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման խնդիրները լուծելու համար անհրաժեշտ է արդյունավետորեն օգտագործել ստեղծագործող մտավորականության հնարավորությունները: Ստեղծված իրադրության մեջ ստեղծագործական միությունների, նրանց սկզբնական կուսակցական կազմակերպությունների պարտքն է ներգործուն միջոցներ ձեռնարկել բարձրացնելու գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինեմատոգրաֆիստների, մշակույթի և գրականության բոլոր գործիչների քաղաքացիական ակտիվությունը, ժողովրդի և հասարակության հանդեպ նրանց պատասխանատվությունը, մեր հոգևոր արժեքների բազմապատկման, վեհ բարոյական իդեալների հաստատման համար:

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ սահմանված կարգով քննության առնել Երևանում անձի պաշտամունքի ժամանակաշրջանի բռնությունների զոհերի հուշարձանի կառուցման հարցը:

13. Հայկական ՍՍՀ ժողովրդական կրթության մինիստրությանը, կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, քաղշրջգործկոմներին՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի փետրվարյան պլենումի պահանջներին համապատասխան, վերացնել բարձրագույն և միջնակարգ դպրոցի ռեֆորմի իրականացման գործում տեղ գտած լուրջ թերությունները, բարձրացնել ուսուցման որակը, ուժեղացնել ուշադրությունը կոմունիստական բարոյականության ձևավորման նկատմամբ, պատրաստել վերակառուցման ակտիվ մարտիկներ:

Հետևողականորեն ամրապնդել հայոց լեզվի վարկը, անհրաժեշտ պայմաններ ստեղծել նրա զարգացման ու հարստացման համար, բոլոր դպրոցներում բարելավել հայոց լեզվի դասավանդումը: Լուրջ ուշադրություն նվիրել ազգամիջյան հաղորդակցման լեզվի՝ ռուսաց լեզվի դասավանդմանը:

Հաստատակամորեն և նպատակասլաց կերպով զբաղվել սովորողների մասնագիտական կողմնորոշման բարելավման, ուսումնական հաստատությունների նյութական բազայի ամրապնդման ու զարգացման հարցերով: Ապահովել երկրի բուհերի նպատակային արտամրցութային ընդունելության պլանի անվերապահ կատարումը:

Մոսկվայում ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի մշտական ներկայացուցչությանը, Հայկական ՍՍՀ ժողովրդական կրթության մինիստրությանը, գիտությունների ակադեմիային, ստեղծագործական միություններին և հասարակական կազմակերպություններին՝ ակտիվացնել աշխատանքը երկրի մյուս ռեգիոնների մեր հայրենակիցների հետ կապերն ամրապնդելու ուղղությամբ, նպատակ ունենալով նրանց ուժերն ու հնարավորությունները օգտագործել հանրապետության գիտական ու մշակութային կյանքի հարստացման, էկոնոմիկայի զարգացման համար:

Մշտապես ամրապնդել ու զարգացնել մշակութային կապերը սփյուռքահայ համայնքների հետ: Վերակառուցել արտասահմանյան երկրներից հայերի հայրենադարձության կազմակերպման աշխատանքը: Հատուկ ուշադրություն նվիրել արտագաղթի տրամադրությունների հաղթահարմանը: Ուժեղացնել հոգատարությունը և ուշադրությունը մեր երկրի նոր քաղաքացիների նկատմամբ, ավելի լրիվ բավարարել նրանց սոցիալ-կենցաղային և մյուս կարիքները, բարձրացնել հայրենադարձների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական, բացատրական աշխատանքի մակարդակը:

14. Պարտավորեցնել ՀԿԿ Կենտկոմի բյուրոյին, քարտուղարությանը՝ ժամանակի պահանջներին համապատասխան վճռականորեն փոխել աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները: Ուշադրությունը կենտրոնացնել էկոնոմիկայի, սոցիալական ոլորտի զարգացման, կադրային քաղաքականության սկզբունքային հարցերի վրա: Բյուրոյում և քարտուղարությունում հաստատել կարծիքների ազատ ու անկեղծ փոխանակման,

ընկերական խստապահանջության և փոխադարձ պահանջկոտության, աշխատանքի հանձնարարված տեղամասի համար յուրաքանչյուրի անհատական պատասխանատվության մթնոլորտ:

Եռանդագին վարել կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում լենինյան սկզբունքների հաստատման գիծը: Կարևոր է ներկա փուլում ապահովել նոր, թարմ ուժերի հոսք դեպի ղեկավար աշխատանք՝ այն հաշվով, որ բոլոր կարևորագույն տեղամասերը գլխավորեն վերակառուցման համար պայքարող, ժամանակակից մակարդակով գործը վարելու ընդունակ համոզված մարտիկներ: 19-րդ կուսկոնֆերանսի պահանջներին համապատասխան, ըստ ամենայնի զարգացնել դեմոկրատական հիմունքները կադրային աշխատանքում, կադրերին ընտրելիս և առաջ քաշելիս լայնորեն հաշվի առնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների կարծիքը, խստապահանջ լինել այն ամենի նկատմամբ, ինչը վերաբերում է աշխատողների բարոյական վարքին, գործարար հատկություններին: Ավելի խստապահանջ լինել ղեկավարների նկատմամբ, բարձրացնել նրանց պատասխանատվությունը կոլեկտիվներում կարգապահության և բարոյահոգեբանական կլիմայի վիճակի համար:

Անհրաժեշտ է լենինյան պահանջների ոգով հաստատակամորեն վարել այնպիսի գիծ, որ կուսակցական, պետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական մարմիններում ներկայացված լինեն հանրապետությունում ապրող ոչ բնիկ ազգության պատկանող անձինք:

Կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին՝ մշտապես զբաղվել ներկուսակցական կյանքի կատարելագործմամբ, բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտականությունը և հեղինակությունը: Մշտական ուշադրություն նվիրել կուսակցական շարքերի աճի և որակական կազմի բարելավման հարցերին:

Խորապես վերլուծել և քննադատաբար գնահատել հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքը, ապահովել յուրաքանչյուր ժողովի անցկացումը բարձր սկզբունքայնության, իրավիճակի անկեղծ քննարկման, վերակառուցման արդյունքների համար յուրաքանչյուր կոմունիստի նկատմամբ պահանջկոտության բարձրացման մթնոլորտում:

Ուժեղացնել ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության մարմինների ղեկավարումը, հասնել նրանց գործունեության եռանդուն վերակառուցման, նախաձեռնության և գործարարության զարգացման: Սովետների հնարավորություններն ավելի լավ օգտագործել տնտեսական և սոցիալ-մշակութային խնդիրների լուծման ասպարեզում:

15. Իրավապահ մարմիններին՝ հասնել հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու աշխատանքում արմատական բեկման, վճռական միջոցառումներ իրականացնել բարելավելու իրավախախտումների կանխարգելումը, հանցագործությունների ժամանակին բացահայտումը, ապահովելու իրավազանցների պատժի անխուսափելիությունը սոցիալիստական օրինականության խստագույն կիրառման հիման վրա:

Հատուկ ուշադրություն նվիրել հանրապետությունում տարածում գտած սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, սպեկուլյացիայի դեմ անհաշտ պայքար մղելու ներգործուն միջոցառումների իրականացմանը: Բարձրացնել դատախազական հսկողության սրությունն ու սկզբունքայնությունը:

Արմատապես բարելավել այդ մարմինների կադրերի հետ տարվող աշխատանքը, վճռականորեն ազատվել անմաքրաբարո, իրենց վարկաբեկած մարդկանցից: Միլիցիայի, դատախազության, դատարանի մարմինները համալրել քաղաքականապես հասուն, պատրաստված, բարոյական տեսակետից անբասիր կադրերով:

***

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, աշխատավորները, կենսագործելով կուսակցության XXVII համագումարի քաղաքական կուրսը, XIX կուսկոնֆերանսի հիմնադրույթները, իրականացնելով ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի ունեցած ելույթում Հայաստանի կուսակցական կազմակերպությանը առաջադրված պատասխանատու խնդիրները, ակտիվորեն կներգրավվեն հանրապետության էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում տեղ գտած լճացման երևույթների հաղթահարման և գաղափարաբարոյական իրադրության առողջացման աշխատանքի մեջ:



# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԱՏՐՄԱՆ ԵՎ ԽԹԱՆՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

**Մ. ՉՈԲԱՆՅԱՆ**

ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ժամանակակից կյանքի կարևորագույն առանձնահատկությունը ՍՄԿԿ կողմից մշակված հասարակական հարաբերությունների հեղափոխական նորացման, վերակառուցման, արմատական տնտեսական ռեֆորմի ծրագրի իրականացման նկատմամբ սովետական մարդկանց աճող շահագրգռվածությունն է:

Համամիութենական XIX կուսկոնֆերանսում նշվեց, որ տնտեսական ռեֆորմը սոցիալիզմի վերափոխման, նորացման անբաժանելի կողմն է, որը նրան հաղորդում է ավելի ժամանակակից ու դինամիկ ձևեր: Նկատի է առնվում գիտատեխնիկական առաջընթացի համար հզոր խթանների ստեղծումը, տնտեսության պլանային վարման հնարավորությունները մարդկանց անձնական շահերի, նախաձեռնության հետ միացումը, տնտեսավարման և կառավարման նոր մեթոդներին այնպիսի ձևեր տալը, որպեսզի մարդը գործով դառնա արտադրության իսկական տերը:

Գործունեության տնտեսական մեթոդներին անցնելու, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրման կարևոր բաղադրամասը աշխատանքի կազմակերպման և վարձատրության ամբողջ համակարգի արմատական կատարելագործումն է: Այս բարդ ու մասշտաբային գործը հենվում է նախ և առաջ որակական վերափոխումների վրա, արտադրության վերջնական արդյունքների մեջ յուրաքանչյուր աշխատողի իրական ավանդի առավել լրիվ ու ստույգ գնահատման ապահովման վրա:

Անհրաժեշտ է լիովին բացահայտել վարձատրության կազմակերպման համակարգում առկա լուրջ թերությունները, քննության առնել աշխատանքի վարձատրության ձևավորման մեխանիզմի ու մեթոդների և աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման վրա խթանիչ ներգործության ուժեղացման առավել ընկըզբունքային հարցերը: Ընդ որում կարևորվում է պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի գործողության պայմաններում լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման ներդրման հետ աշխատանքի վարձատրության նոր սկզբունքների կիրառման օրգանական կապը:

Աշխատանքի վարձատրության համակարգի վերակառուցումը որպես ձեռնարկությունների գործունեության պլանավորման ու կառավարման նոր մոտեցումների օրգանական մաս, նախատեսում է գիտականորեն հիմնավորված նորմատիվների կիրառում, աշխատանքի սոցիալ-տնտեսական օգտակարության և գնահատման չափանիշների ու սկզբունքների սահմանում, աշխատավարձի ճկուն համակարգի ձևավորում: Նկատի է առնվում աշխատավարձի կազմավորման մեթոդների, ինչպես նաև դրա կառավարման մեխանիզմի մեջ արմատական փոփոխությունների իրականացումը:

Լրիվ տնտհաշվարկի ներդրման պայմաններում ձեռնարկությունների համար սկզբունքայնորեն կարևոր է այդ աշխատանքի զուգակցումը աշխատավարձի կազմակերպման վերակառուցման հետ: Այս դեպքում նախ օրգանապես միահյուսվում են անձնական և կոլեկտիվ սոցիալ-տնտեսական շահերը, երկրորդ՝ բաշխումն իրականացվում է վերջնական արդյունքներին լրիվ համապատասխան, երրորդ՝ ուժեղանում է աշխատավարձի ակտիվ փոխգործողությունը աշխատավորական կոլեկտիվի տնտհաշվարկային գործունեության հետ: Նման մոտեցումն առավել ստույգ է արտացոլում աշխատավարձի սոցիալ-տնտեսական էության բարդ գամման, որը մինչ այդ

*ՉՈԲԱՆՅԱՆ ՄԱՐՏՈՒՆ ԽԱՉԱՏՈՒՐԻ — տնտեսագիտության թեկնածու:*

ներկայացվում էր միակողմանի ու պարզեցված, որպես պետության ու աշխատավորի միջև եղած զուտ հարաբերության, առանց տնտհաշվարկի և շահույթի հետ փոխկապվածության: Դրանով իսկ, անհրաժեշտ պայմաններ են ստեղծվում հասարակության ու աշխատավորական կոլեկտիվի, ձեռնարկության ու աշխատողի միջև փոխհարաբերությունների բոլոր կողմերի, նրանց բազմապիսի պահանջմունքների ու շահերի համակողմանի քննարկման համար: Կարևոր է ապահովել այդ ամբողջ պրոցեսի հաջող գործողությունը և արդյունավետ կառավարումը, ձգտել ըստ աշխատանքի բաշխման սկզբունքների հետևողական իրականացմանը՝ սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջներին համապատասխան:

Պրոբլեմի բարդությունն այն է, որ էկոնոմիկայում, կառավարման մեջ, բաշխման հարաբերություններում նոր սկզբունքների հաստատումը տեղի է ունենում այնպիսի պայմաններում, երբ դեռ ուժի մեջ են և գործում են տնտեսական հին մեխանիզմի տարրերն ու հոգեբանությունը, իսկ զարգացումը, ճիշտ լուծումների հայտնաբերումը կատարվում է հակամարտության, տարբեր մտածելակերպի ու շահերի բախման հենքի վրա:

Ընդ որում չպետք է մոռանալ, որ երկար ժամանակ աշխատավարձի հասկացության մակերեսային բացատրման, դրա սկզբունքների դեֆորմացման պատճառով տնտեսական պրակտիկայում գերիշխել են հավասարեցման միտումները. «Համահավասարեցումը,— նշել է Մ. Ս. Գորբաչովը,— արտացոլումն է մանրբուրժուական հայացքների, որոնք ոչ մի ընդհանուր բան չունեն մարքսիզմ-լենինիզմի, գիտական սոցիալիզմի հետ: Եվ մենք առաջ չենք շարժվի, չենք կատարի վերակառուցման խնդիրները, եթե դեն չնետենք հավասարարական հայացքներն ամենուրեք, որտեղ դրանք դեռևս պահպանվում են: Այն քայքայիչ ներգործություն է ունենում ոչ միայն տնտեսության, այլև բարոյականության վրա, գցում է բարեխիղճ և ստեղծագործական աշխատանքի վարկը, մարում է որակավորման բարձրացման հանդեպ շահագրգռվածությունը, հարված հասցնում մրցունակությանը, մրցակցությանը աշխատանքում»:

Այս պայմաններում բնականորեն է դիտվել տնտեսական ղեկավարների, տեղական մարմինների կողմից վերադաս ու կենտրոնական կազմակերպություններից աշխատավարձի ֆոնդի, աշխատավորների թվաքանակի լիմիտներ «հայթայթելը», որոնք հաստատվել են կենտրոնացված ձևով, առանց լրիվ չափով հաշվի առնելու իրական դրությունը տեղերում: Տնտեսական կյանքում, աշխատավարձի համար միջոցների չափերի որոշման գործում, ինչպես նաև մյուս ոլորտներում ստեղծվել է խընամառուական հոգեբանություն, ձևավորվել են տեղայնության, գերատեսչականության և խմբակային եսասիրության դրսևորումներ ու միտումներ:

Աշխատավարձի բացարձակ ֆոնդի սահմանման ու ավելացման ժամանակ անմիջականորեն և ուղղակի կերպով դրանք չեն կապակցվել ձեռնարկության գործունեության վերջնական արդյունքների, դրանց որակական բնութագրերի հետ: Սկըզբունքային ուշադրություն չի դարձվել ձեռնարկության արտադրատեխնիկական պոտենցիալի առավելաչափ օգտագործման և զգալի ներքին ռեզերվների մոբիլիզացման վրա: Միևնույն ժամանակ ի դեմս պետական ձեռնարկության հասարակությունը անմիջական հարաբերության մեջ է մտել աշխատողների հետ, որպես իր անդամների, և ապահովել է դրամական միջոցների վճարման սոցիալական երաշխիքներ:

Տեղի է ունեցել հավասարեցման զգալի ուժեղացում բաշխման հարաբերություններում, ձեռնարկություններում ու կազմակերպություններում իրականացվել է աշխատանքի վարձատրության հավասարեցման ընդգծված քաղաքականություն: Գործնականապես հավասար աշխատավարձ է սահմանվել բարձրորակ և սակավորակ աշխատանքի համար, դրա չափը և մակարդակն անմիջականորեն և հետևողականորեն չեն կապակցվել աշխատանքի քանակի ու որակի, մեծ ու փոքր արդյունքի, վերջնական հատուցման հետ: Այս երևույթը դիտվել է ամենուր՝ ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ նրա ռեգիոններում, մշտապես տեղի է ունեցել միջին աշխատավարձի փաստացի հավասարեցումը, օրինակ, ինժեներատեխնիկական աշխատողների ու բանվորների միջև:

Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ 1940 թվականին ինժեներատեխնիկական աշխատողների միջին ամսական դրամական աշխատավարձը կազմել է 62,4 ռուբլի, բանվորներինը՝ 31,1 ռուբլի, դրանց բացարձակ չափի հարաբերակցությունը կազմել է 2:1: 1960 թվականին այս ցուցանիշների հարաբերակցությունը կազմել է 1,47:1, 1970 թվականին՝ 1,3:1, իսկ 1985 թվականին՝ 1,02:1: Ներկայումս փաստա-



ցիորեն վերացվել է ինժեներատեխնիկական աշխատողների ու բանվորների աշխատավարձի միջև եղած տարբերությունը: Ընդ որում նշված ժամանակաշրջանի ցանկացած հատվածում դիտվում է բանվորների աշխատավարձի աճի առաջանցում ԻՏԱ-ի աշխատավարձի նկատմամբ: Նշվել է նաև ծառայողների աշխատավարձի ավելի արագ աճի միտում՝ ԻՏԱ-ի համեմատ:

Այսպիսի մերձեցման դրսևորումը և հավասարեցումը հանգեցրել և հանգեցնում է ինժեներ-մեխանիկի, տեխնոլոգի, կոնստրուկտորի և արտադրական մյուս մասնագիտությունների հեղինակության անկմանը, ավելի ստեղծագործական, որակյալ և արտադրողական աշխատանքի նկատմամբ նյութական ու բարոյական խթանների իջեցմանը: Այստեղ թաքնված է արտադրության ու սպառման ձեռքբերված մակարդակի սառեցման, լճացման երևույթների առաջացման և խորացման վտանգը: Եվ, ավելի վատ, արդյունաբերաարտադրական անձնակազմի որոշակի մասի մոտ առաջանում է իներտություն և անտարբերություն արտադրության, դրա արդյունքների նկատմամբ անպատասխանատվության և բացահայտ խնամառուական զգացողություն:

Խախտվել են բաշխման գործում սոցիալական արդարության հիմնական ըսկըզբունքների պահանջները, նվազել է արտադրության ոլորտում մասնագիտությունների շատ խմբերի աշխատանքի սոցիալ-տնտեսական նշանակությունը, ձևախախտվել է բարձրարտադրողական, ստեղծագործորեն բովանդակալից, բարձրարդյունավետ աշխատանքի հասկացությունը:

Այս պայմաններում շեշտը դրվում է արտադրության նորմաների կատարման վրա: Այնինչ, արդյունաբերության, շինարարության և մյուս ճյուղերի շատ ձեռնարկություններում ու կազմակերպություններում գործում են արտադրության նվազեցված, հին նորմաները: 1987 թ. արդյունաբերությունում նորմաների կատարման միջին մակարդակը, օրինակ, գործարքային բանվորների մոտ կազմել է 132,2 տոկոս, ընդ որում կիրառվող նորմաների ու նորմատիվների ցածր որակի, հնացած նորմաների ոչ ժամանակին փոխարինման պատճառով, նրանցից յուրաքանչյուր հինգերորդը արտադրության նորման կատարել է 150 տոկոսով: Իսկ առանձին ձեռնարկություններում՝ նույնիսկ յուրաքանչյուր երրորդը: Ցածր է գործող նորմաների լարվածության աստիճանը, ըստ հաշվարկների, դրանց միայն երեք քառորդն է համապատասխանում տեխնիկայի, տեխնոլոգիայի, արտադրության և աշխատանքի կազմակերպման ձեռքբերված մակարդակին: Բացի դրանից, ժամանակավարձով աշխատող բանվորների զգալի մասի համար դեռևս չեն մշակվել նորմավորված առաջադրանքներ: Դանդաղ են միջճյուղային և ճյուղային առաջադիմական նորմաների ու խոշորացված կոմպլեքսային նորմաների մշակման ու կիրառման տեմպերը, վերջինների տեսակարար կշիռը ձեռնարկություններում կազմում է ընդամենը 17 տոկոս, իսկ շատ տեղերում այդպիսի նորմաները բրիգադների համար նույնիսկ չեն սահմանվել:

Անհրաժեշտ է նշել, որ արտադրության նորմաների կատարման բարձր տոկոսը տեղի է ունեցել վարձաչափերի նվազեցման և անփոփոխ ժամային տարիֆային դրույքների ու պաշտոնեական ռոճիկների պայմաններում: Բնական է, որ դա հանգեցրել է նորմաների նվազեցման գործում աշխատողների շահագրգռվածության ուժեղացմանը և որպես դրա հետևանք՝ աշխատանքի արտադրողականության անկմանը: Դրանով իսկ ձեռնարկություններում ապահովվել են բարձր վաստակները: Դա առիթ հանդիսացավ, որպեսզի առանձին մասնագետներ առաջարկություններ անեն աշխատանքի նորման դրա վարձատրությունից անջատելու, աշխատանքի չափի և աշխատանքի վարձատրության չափի միջև անմիջական կապը վերացնելու մասին: Մինչդեռ խնդիրը կայանում է նրանում, որ գիտականորեն հիմնավորված նորմային համապատասխան որոշվի աշխատանքի վարձատրության մակարդակը, պահպանվի դրանց միջև խիստ փոխկապվածությունը: Բաշխման հարաբերությունների ձևախեղումները ուղղակի կերպով հարվածել են նաև ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների աշխատանքի վարձատրությանը: Շինարարության մեջ, օրինակ, 1985 թ. այն 100 ռուբլով պակաս է եղել նույն ճյուղի բանվորների աշխատավարձից: Վիճակն ավելի լավ չէ պարգևատրման համակարգում, այստեղ ուժի մեջ են եղել տասնյակ տարբեր հրահանգներ:

Աշխատանքի վարձատրության մակարդակն ու չափը անձնական աշխատանքային ավանդի, ձեռնարկության արտադրատնտեսական վերջնական, այլ ոչ թե միջանկյալ արդյունքների հետ խիստ համապատասխանեցումը և դրա հիման վրա աշխատանքի հեղինակության և արդյունավետության բարձրացումը սկզբունքային տնտե-

սական ու սոցիալ-քաղաքական նշանակություն է ձեռք բերում: Այս խնդրի լուծումն ուղղված է ոչ միայն բարձրարդյունավետ ու որակյալ աշխատանքի խթանմանը, բոլոր մասնագիտությունների բարոյական հեղինակության աճին, այլև բարձր կենսամակարդակի ձեռքբերմանը, բոլոր աշխատավորների իրական հավասարության սոցիալական երաշխիքների ապահովմանը, աշխատանքի ավանդին համեմատ հասարակության մեջ նրանց դիրքի ամրապնդմանը:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվել է աշխատանքի վարձատրության համակարգի արդյունավետության բարձրացման, աշխատողների վարձատրության չափերը նրանց աշխատանքային ավանդի հետ սերտ կապակցման, հավասարեցման տարրերի վճռական վերացման, աշխատանքում եղած թերությունների ու բացթողումների համար նյութական ու բարոյական պատասխանատվության բարձրացման նշանակությունը (տե՛ս **ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 311**):

Այս խնդիրների իրականացման գործում կարևորագույն ակտ է դառնում «Պետական ձեռնարկությունների (միավորման) մասին» ՍՍՀՄ օրենքը, որը սահմանում է ժողովրդական տնտեսության հիմնական օղակի գործունեության գլխավոր սկզբունքները, նախատեսում է կառավարման տնտեսական մեթոդների ուժեղացումը: Ձեռնարկության գործունեության կարևորագույն սկզբունքներն են հանդիսանում լրիվ տնտեսական հաշվարկը և ինքնաֆինանսավորումը, արտադրական, սոցիալական գործունեության, աշխատանքի վարձատրության իրականացումը աշխատավորական կոլեկտիվի կողմից վաստակած միջոցների հաշվին:

Աշխատանքի վարձատրության կազմակերպման կատարելագործման ասպարեզում սկզբունքային նշանակություն ունի աշխատավարձի ֆոնդի ձևավորման աղբյուրների ու մեթոդների սահմանումը: Պետական ձեռնարկության մասին օրենքով տրվում է աշխատանքի վարձատրության ֆոնդի գոյացման երկու տարբերակների ընտրության հնարավորությունը՝ աշխատանքի վարձատրության միասնական ֆոնդ կամ երկու ֆոնդ՝ աշխատավարձի և նյութական խրախուսման:

Երկու ֆոնդերի գոյությունը և դրանց նշանակությունը պայմանավորված են յուրահատուկ բնույթով՝ աշխատավարձի ֆոնդը օգտագործվում է աշխատողների կոնկրետ աշխատանքի վարձատրության համար, իսկ նյութական խրախուսման ֆոնդը՝ պարգևների՝ հավելավճարումների, խրախուսման մյուս ձևերի, ինչպես նաև նյութական օգնության համար: Սակայն, եթե ձեռնարկությունում ապահովվում է հումքի, նյութերի, էներգիայի մյուս ռեսուրսների տնտեսումը, ապա դրա համար վարձատրությունը աշխատավարձի ֆոնդից չի կատարվում, այն պետք է իրականացվի, ինչպես և հավելումները շինվածքների բարձր որակի համար՝ նյութական խրախուսման ֆոնդից, որը նույնպես ձևավորվում է ըստ նորմատիվի՝ ձեռնարկության շահույթից: Այստեղ սերտորեն միահյուսվում են աշխատավորի անձնական և կոլեկտիվ տնտեսական շահերը, որպես աշխատավարձի (անհրաժեշտ արդյունք) և շահույթի (հավելյալ արդյունք) ավելացման գործում շահագրգռված անհատ և կոլեկտիվի անդամ: Խոսքը բանվորական ուժի վերարտադրության համար ծախսերի հատուցման մասին է, որի համար նյութական միջոց է ծառայում անհրաժեշտ արդյունքը: Բանն այն է, որ աշխատուժի վերարտադրությունը նախատեսված է ըստ աշխատանքի բաշխման օրենքով, որը պահանջում է նյութական բարիքների ու ծառայությունների առանձնացում կենսամիջոցների ֆոնդից կամ սպառման ֆոնդից՝ աշխատանքի քանակի ու որակի համեմատ:

Լրիվ տնտհաշվարկի սկզբունքների ներդրումը զգալիորեն փոփոխում է նյութական խթանման համակարգը այն կապակցությամբ, որ աշխատանքի վարձատրության չափը և աճը անմիջականորեն կապվում են ձեռնարկության ֆինանսատնտեսական գործունեության վերջնական արդյունքների հետ: Այս պայմաններում կարևոր նշանակություն է ձեռք բերում ներտնտեսական լրիվ տնտհաշվարկի կիրառումը: Այդ ուղղությամբ ձեռնարկությունների կուտակած փորձը ցույց է տալիս, որ, օրինակ, կոլեկտիվ կապալի փոխադրվելու դեպքում աշխատողների ավելի պակաս քանակով աշխատանքի հաստատված ծավալի կատարումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը ուղղակիորեն ազդում է վաստակի ավելացման վրա: Բացի դրանից արտադրանքի (աշխատանքի) բարձր որակը, կարգապահության ամրապնդումը, ստեղծագործական նախաձեռնությունը, ինչպես նաև արտադրական առաջադրանքի լրիվ կատարումը պայմանավորվում է հավելումների ու պարգևավճարների ձևով զգալի գումարի ստացումը: Հակառակը՝ խոտանված արտադրանքի թողարկումը, գործալքումը, տեխնիկական և կատարողական կարգապահության խախտումները հանգեցնում են հավելավճարներից, հավելումներից զրկմանը, հետևաբար և վաստակի գումարի նվազեցմանը: Տնտեսավարման պրակտիկան դրա հետ մեկտեղ ցույց է տալիս, որ շատ արտադրամասերում, տեղամասերում, արտադրություններում դեռևս չի կարգավորվել և չի կազմակերպվել հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի ծախսման անհրաժեշտ հաշվառումն ու պատշաճ նորմավորումը, չեն տեղակայվել համապատասխան չափիչ սարքեր ու ապարատուրա: Բացի այդ, շատ ձեռնարկություններում արտադրական սարքավորումների մեկ երրորդը օգտագործվում է ծառայության նորմատիվային ժամկետից դուրս, իսկ հաստոցների, սարքավորումների, մեքենաների ու մեխանիզմների զգալի մասը պարզապես սպառել է ֆիզիկական և բարոյական մաշվածության բոլոր ժամկետները և նրանց հետագա շահագործումը չի կարող ապահովել դետալների, նախապատրաստուքների ճշգրիտ մշակումը, մյուս ռեսուրսների խնայողական օգտագործումը: Ներարտադրական տնտհաշվարկի կիրառումը, անցումը կոլեկտիվ կապալի՝ արտադրության նորացումն արագացնելու, աշխատանքի արդյունավետության բարձրացման վրա ներգործությունն ուժեղացնելու կարևոր պայմաններն են:





Աշխատանքի վարձատրության ֆոնդի ձևավորման գործում սկզբունքային նշանակություն ունի դրա կառուցման մեթոդի ընտրությունը: Պրակտիկայում լայնորեն կիրառվում է նորմատիվային մեթոդը, որի օգտագործումը ձեռնարկություններում ընթացել է նորմատիվային պլանավորման ընդհանուր համակարգի հետագա կատարելագործման համար բավարար փորձի կուտակման պայմաններում, աշխատանքի վարձատրության կազմակերպման ու պլանավորման գործում համապատասխան փոփոխությունների իրականացման միջոցով:

Երկար ժամանակ արդյունաբերության միավորումներում ու ձեռնարկություններում առավելապես կիրառվել է աշխատանքի վարձատրության ֆոնդի կառուցման մակարդակային նորմատիվը, որը նախատեսում է ապրանքային (համախառն) կամ նորմատիվային զուտ արտադրանքի մեկ ռուբլու հաշվով աշխատողների աշխատավարձի ծախսի սահմանումը: Տվյալ նորմատիվների կիրառումը ցույց է տվել, որ դրա հիման վրա աշխատանքի վարձատրության ֆոնդի կառուցման ժամանակ այդ նպատակների համար միջոցներն աճել են արտադրության ծավալի աճին համամասնորեն, այսինքն ապրանքային կամ զուտ նորմատիվային արտադրանքի, օրինակ, 3—5 տոկոսով աճի դեպքում աշխատանքի վարձատրության միջոցներն ավելացել են այդ նույն տոկոսով և հակառակը: Այս մեթոդի հիմնական թերությունն այն է, որ արտադրանքի ծավալի ավելացումը, արտադրության ընդլայնումը հանգեցնում է նաև արտադրանքի արտադրության գործում առարկայացված աշխատանքի ծախսումների մասնակցության բարձրացմանը, իսկ դա, բնականաբար, լրիվ և օբյեկտիվ պատկերացում չի տալիս տվյալ կոլեկտիվի կողմից կատարվող ծախսերի իրական մակարդակի մասին: Այդ մեթոդի կիրառումը հաշվի չի առնում նաև թողարկվող արտադրանքի կազմում կառուցվածքային այն գործոնների ազդեցությունը, որոնք պայմանավորում են զուտ նորմատիվային արտադրանքի ծավալի անհամապատասխանությունը, շեղումը դրա փաստացի աշխատատարությունից:

Միավորումները ու ձեռնարկությունները լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրվելու կապակցությամբ զգալի կիրառում է ստացել աշխատանքի վարձատրության ֆոնդի գոյացման հավելաճային-բազային ձևը: Այդ ձևի յուրահատկությունը դրա մեծ կայունությունն է, արդյունաբերաարտադրական անձնակազմի մեկ ռուբլու արտադրանքի հաշվով աշխատավարձի նորմատիվի համեմատությամբ:

Սա բոլորովին էլ չի նշանակում, որ աշխատավարձի ֆոնդի գոյացման նորմատիվի աճային ձևի օգտագործումը տնտեսագիտորեն ու մեթոդապես անխալ է: Բանն այն է, որ ինչպես ցույց է տալիս այդ եղանակով աշխատող ձեռնարկությունների փորձը, դրա կիրառման ժամանակ ի հայտ են գալիս գործոններ, որոնք անմիջականորեն ազդում են այդ մեթոդի խթանիչ ներգործության վրա:

Անհրաժեշտ է նշել, որ հավելաճային-բազային մեթոդով աշխատավարձի ֆոնդի կառուցման ժամանակ,դրա գերակշիռ մասը գոյանում է բազային ֆոնդի հաշվին, որը փաստորեն երաշխավորված է, իսկ մնացած մասը ձևավորվում է աճային նորմատիվով և կազմում է աննշան մասը (գործնականորեն 2—3 տոկոս): Բայց, քանի որ աշխատավարձի բազային կամ հիմնական ֆոնդը կառուցվում է փաստացիորեն նախորդ տարվա ֆոնդի հիման վրա, դրա մեջ չեն կարող չարտացոլվել անցած ժամանակաշրջանում աշխատավարձի կազմակերպման գործում տեղ գտած թերությունները: Աշխատավարձի ֆոնդի գոյացման բազային-հավելաճային նորմատիվների կի-

# ԽՍՏՈՐԵՆ ՊԱՀՊԱՆԵԼ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕԲՅԵԿՏԻՎ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Զ. ԹԱԴևՎՈՍՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ հիմնական խնդիրների համակարգի, ամենից առաջ հասարակական արտադրության բարձրագույն նպատակի իրականացումը օբյեկտիվորեն հնարավոր է միայն ժամանակակից, դինամիկ զարգացող նյութատեխնիկական բազայի վրա: Վերջինիս ամրապնդմանն ու կատարելագործմանն է ուղղված տնտեսավարման և էկոնոմիկայի կառավարման մեխանիզմի արմատական ռեֆորմը, որը կոչված է նոր ազդակներ հաղորդել, նյութական ամուր հիմք ստեղծել սովետական հասարակության սոցիալ-տնտեսական արագ առաջադիմության համար:

Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման նյութական բազայի պլանավորման համար կարևոր նշանակություն ունի հասարակական արտադրության, այդ թվում նաև նրա 1-ին և 2-րդ ստորաբաժանումների դինամիկայի ու կառուցվածքի երկարատև միտումների ուսումնասիրումը: Այդ ստորաբաժանումների համամասնությունների պլանային և վերլուծական աշխատանքների համար դրանց ներքին կառուցվածքում կատարվող տեղաշարժերի հետևողական օպտիմալացումը կարևոր օղակ է սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի իրականացման մեխանիզմում:

Երկու ստորաբաժանման դինամիկայի ու կառուցվածքի վրա սոցիալիստական տնտեսավարման բարձրագույն նպատակի ներգործությունը գիտականորեն ըմբռնելու և համակողմանիորեն հաշվի առնելու անհրաժեշտ պայմանն այսօր հասարակական արտադրության երկու ստորաբաժանման մասին Մարքսի ուսմունքից բխող ընդհանուր ու մասնավոր օրինաչափությունների ստեղծագործաբար միակցումն ու զարգացումն է: Հասարակական արտադրության (արդյունքի) երկու մեծ ստորաբաժանման մասնատելը պայմանավորված է առանձին վերցրած արտադրողական և ոչ արտադրողական սպառման յուրաքանչյուր ակտում ամեն մի առանձին արդյունքի սպառողական արժեքի տնտեսական նշանակությամբ: Սակայն արտադրության ու սպառման ժողովրդատնտեսական մակարդակով ստորաբաժանումներից յուրաքանչյուրը բնութագրվում է ընդլայնված վերարտադրության պրոցեսում նրա առանձնակի ֆունկցիոնալ դերով:

Ինչպես հայտնի է, հասարակական վերարտադրության պրոցեսն ընթանում է երեք հիմնական ձևով՝ հասարակական արդյունքի և հարստության վերարտադրություն, աշխատուժի և ապա նաև սոցիալիստական արտադրական հարաբերությունների ամբողջ համալիրի վերարտադրություն: Սակայն չի կարելի չնշել, որ վերջին տարիներին հետազոտողներն ավելի ու ավելի ակտիվորեն են ուշադրությունը բևեռում հասարակական արտադրության ու սպառման ևս մեկ ձևի՝ բնառեսուրսային վերարտադրության վրա: Մի շարք բնական գործոնների (հողերի, անտառների, ջրային ու օդային և այլ զանգվածների) վերականգնման աշխատանքների մեծ մասշտաբներն այդ պրոցեսը օբյեկտիվորեն դարձնում են վերարտադրության անկապտելի տարրը:

Սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի իրականացման պրոցեսը ներառնում է վերարտադրության պրոցեսի բոլոր հիմնական ձևերը: Դրանցից յուրաքանչյուրում, բարձրագույն նպատակի այս կամ այն կոնկրետ բաղադրիչներին համապատասխան առանձնահատուկ պահանջներ են առաջանում 1-ին և 2-րդ

ԹԱԴևՎՈՍՅԱՆ ԶՈՅԱ ԱՂՎԱՆԻ — Երևանի ԺՏԻ քաղաքատնտեսության ամբիոնի դասախոս:



ստորաբաժանումների դինամիկայի և կառուցվածքի նկատմամբ: Սակայն տարբեր վերարտադրողական ոլորտներում բարձրագույն նպատակը և նրա կոնկրետ դրսևորումները բարդ են ու բազմակողմանի: Գոյություն ունեն հասարակական արտադրության երկու ստորաբաժանման հետ բարձրագույն նպատակի փոխառնչությունը բնորոշող առավել ընդհանուր օրինչափություններ, որոնք դրսևորվում են այն բանում, որ 2-րդ ստորաբաժանման արդյունքը առավելագույն չափով է նյութականացնում բարձրագույն նպատակը: Միաժամանակ 1-ին ստորաբաժանումը հանդես է գալիս որպես բարձրագույն նպատակի նյութականացման համար արտադրության միջոցներ արտադրող ոլորտ: Թեև որոշ առումով 1-ին ստորաբաժանումը նույնպես անմիջականորեն ծառայում է բարձրագույն նպատակի իրացմանը (որակական տեղաշարժեր՝ աշխատանքի պայմաններում և բնույթում, աշխատաժամանակի կրճատում՝ աշխատանքի բարձր արտադրողականության շնորհիվ, շրջակա միջավայրի պահպանում ու վերականգնում), նրա գլխավոր վերարտադրողական դերը 2-րդ ստորաբաժանման համար նյութական միջոցների ստեղծումն է:

Ընդ որում, որքան բարձր է 1-ին ստորաբաժանման արտադրության արդյունավետությունը, այնքան ավելի լայն հնարավորություններ են գոյանում 2-րդ ստորաբաժանման արտադրության աճի և կառուցվածքային փոփոխությունների համար: Այսպիսով, օրինաչափ է 1-ին և 2-րդ ստորաբաժանումների հարաբերակցությունը դիտարկել որպես սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի իրացման կարճաժամկետ, միջին և երկարաժամկետ ասպեկտների հարաբերակցություն:

Համանման ձևով կարելի է բնութագրել նաև ազգային հարստության արտադրական և ոչ արտադրական ֆոնդերի փոխհարաբերակցությունը: Հարստության ոչ արտադրողական ֆոնդը բարձրագույն նպատակի ընթացիկ նյութականացումն է, իսկ արտադրողական ֆոնդը ամբողջությամբ ընդլայնված վերարտադրության ելակետային բազան է, այդ թվում նաև 2-րդ ստորաբաժանման համար: Այդ կապակցությամբ սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի վերոհիշյալ երեք ասպեկտների փոխհարաբերակցությունը նաև ազգային հարստության երկու մասերի հարաբերակցություն է:

Զնայած 1-ին և 2-րդ ստորաբաժանումների, ինչպես նաև ազգային հարստության արտադրողական և ոչ արտադրողական ֆոնդերի տրամաբանական միասնությանը, նրանց համամասնությունները հասարակական ամբողջական արդյունքում և հարստության մեջ զգալիորեն տարբեր են: Դա կապված է աշխատանքի միջոցներին ու արդյունքներին հատկորոշ՝ արտադրության պրոցեսում դրանց իրացման մեխանիզմում գոյություն ունեցող որակական տարբերությունների հետ: Դրա հետևանքով, 1-ին ստորաբաժանման արդյունքի բնական կազմի մեջ գերակշռում են աշխատանքի առարկաները, իսկ հարստության արտադրական ֆոնդի բնական կազմի մեջ՝ աշխատանքի միջոցները:

Ըստ առկա գնահատականների, 80-ական թվականների սկզբում ՍՍՀՄ-ի ազգային հարստության արտադրական ֆոնդը մոտավորապես 2,1—2,2 անգամ գերազանցում էր 1-ին ստորաբաժանման արդյունքի մեծությանը: Ընդ որում, 1-ին ստորաբաժանման արդյունքի կազմի մեջ աշխատանքի միջոցների արժեքի մեկ միավորին ընկնում էր աշխատանքի առարկաների արժեքի 5—5,1 միավոր(Черников Л. А Прогнозирование темпов и пропорций экономического роста. М., Знание, 1983, стр. 23; Сидорович А. В. Национальное богатство при социализме. М., МГУ, 1985, стр. 147, 162).

Ընդհակառակը, ազգային հարստության արտադրական ֆոնդերի կազմի մեջ աշխատանքի առարկաների պաշարի արժեքի մեկ միավորին ընկնում է արտադրական հիմնական ֆոնդերի արժեքի 3,5—3,6 միավոր:

Սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի իրացման պրոբլեմների տեսանկյունից կարևոր է այն, որ համանման միտումներ են դրսևորվում նաև «2-րդ ստորաբաժանում— հարստության ոչ արտադրական ֆոնդ» դիալեկտիկական փոխկապակցությունում: 80-ական թվականների սկզբում ՍՍՀՄ-ի ազգային հարստության ոչ արտադրական ֆոնդը 3,3—3,4 անգամ գերազանցում էր 2-րդ ստորաբաժանման արդյունքին: Ընդսմին, 2-րդ ստորաբաժանման արդյունքի կազմում շարք մտնող ոչ արտադրական հիմնական ֆոնդերի արժեքի մեկ միավորին ընկնում էր նյութական բարիքների ու ծառայությունների ընթացիկ սպառման ֆոնդի արժեքի մոտ 8 միավոր: Ընդհակառակը, ազգային հարստության ոչ արտադրական ֆոնդի կազմում առկա ոչ արտադրական հիմնական ֆոնդերի արժեքը (լրիվ մեծությամբ)

գրեթե հավասարվում էր «ընթացիկ սպառման» բարիքների կուտակված պաշարի արժեքին։ Դա կատարվում էր տնային տնտեսություններում միջին և երկարաժամկետ օգտագործման ապրանքների ու որոշ չափով էլ՝ մանրածախ ու մեծածախ առևտրում սպառողական բարիքների բոլոր տեսակների պաշարների ձևավորման հաշվին։

Այս ամենը հանգեցնում է այն եզրակացության, որ սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի իրացման բոլոր ասպեկտների միասնությունը պահանջում է սպառման առարկաների և արտադրության միջոցների ծավալների մեծացում ինչպես դրանց ընթացիկ արտադրության, այնպես էլ անհրաժեշտ պաշարների՝ ազգային հարստության արտադրական և ոչ արտադրական ֆոնդերի շրջանակներում։

Միաժամանակ, այնպիսի օբյեկտիվ պրոցեսներ, ինչպիսիք են գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրողական ուժերի զարգացումը, արտադրության բարձրագույն նպատակի հարստացումը անխուսափելիորեն փոխում են մեր պատկերացումները 1-ին և 2-րդ ստորաբաժանումների դինամիկայի օրինաչափությունների մասին։ Դրանք համապատասխանում են բարձրագույն նպատակի իրացման ինչպես կարճաժամկետ, այնպես էլ երկարաժամկետ ասպեկտներին։

Այդ առումով կարևոր նշանակություն ունի արտադրության բարձրագույն նպատակի և հասարակական արտադրության 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի դիալեկտիկական կապի ուսումնասիրությունը։ Պարզաբանենք, թե նշված օրենքն ինչպես է արտացոլվում բարձրագույն նպատակում և վերջինս ինչպես է ներգործում 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի կենսագործման վրա։

Բազմաթիվ հետազոտողների կարծիքով, նշված օրենքի գործողության հիմնական շարժառիթը 2-րդ ստորաբաժանման համեմատությամբ հասարակական արտադրության 1-ին ստորաբաժանման արտադրանքի աճի ավելի բարձր տեմպն է, հետևաբար՝ հասարակական ամբողջական արդյունքում 1-ին ստորաբաժանման բաժնի մշտական ավելացման օբյեկտիվ անհրաժեշտությունը։ Չխոսելով արդեն այսօրինակ առաջանցման հնարավորության՝ որպես հասարակական վերարտադրության զարգացման կայուն օրենքի մասին, նշենք միայն, որ դա հանգեցնում է օրենքի բուն բովանդակության աղքատացման։ Այդ դեպքում օրենքն, ըստ էության, դառնում է քանակական տեղաշարժեր «արձանագրող», որը կտրված է հասարակության մեջ տեղի ունեցող տնտեսական ու սոցիալական վերափոխումներից, արտադրողական ուժերի զարգացման որակական տեղաշարժերից, գիտատեխնիկական առաջադիմությունից և այլ խորքային շրջադարձերից։ Դժվար չէ նկատել, որ այդպիսի մոտեցման դեպքում քննարկվող օրենքի բովանդակությունը նեղանում է սոցիալիստական ընդլայնված վերարտադրության այլ օրենքների համեմատությամբ։

Ինչպես իրավացիորեն ընդգծում է «Կոմունիստ» հանդեսը, «Երկրորդ ստորաբաժանման համեմատությամբ առաջինի առավելագույն աճի՝ բովանդակությամբ և իմաստով խոր օրենքը, որպես ընդլայնված վերարտադրության ապահովման կարևոր նյութական նախադրյալ, ձևականորեն այլափոխվել է և լիովին հանգեցվել քանակական, տեմպային մեկնաբանումների» («Коммунист», 1987, № 7, стр. 22)։

Միանգամայն օրինաչափ է 1-ին և 2-րդ ստորաբաժանումների առավել ընդհանուր ու կայուն առնչությունները բնութագրել որպես 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենք։ Այդպիսի մոտեցումը հնարավորություն է ընձեռում հաղթահարել երկու ստորաբաժանումների երկարատև փոխազդեցությունը՝ դրանցից մեկի առաջանցիկ աճի զուտ քանակական փաստին հանգեցնելու միտումը։

«Առավելագույն զարգացում» հասկացությունը որոշ չափով ներառում է առաջանցիկ աճի գաղափարը, սակայն չի հանգեցվում բացառապես դրան։ 1-ին ստորաբաժանման առաջանցիկ զարգացումը ենթադրում է նրա աճի սոսկ ավելի բարձր տեմպեր և համապատասխանաբար՝ նրա բաժնի մեծացում հասարակական արդյունքի մեջ։ Առավելագույն զարգացումը 1-ին ստորաբաժանման այն դերի իրականացումն է, որի նպատակն է ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջադիմության խթանումը, հանրային աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, ընդլայնված վերարտադրության տեմպերի ու համամասնությունների ձևավորումը։ Դա բնավ չի հակասում սոցիալիստական վերարտադրության բարձրագույն նպատակի իրացման խնդիրներին։ Ընդհակառակը, «առավելագույն զարգացումը», որպես կանոն, հասարակությանը հնարավորություն է տալիս ոչ միայն լիովին ու համակողմանիորեն ձևակերպել սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակը, այլև գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները ներդնելու հիման վրա



հետևողականորեն ստեղծել անհրաժեշտ նյութական բազա՝ բարձրագույն նպատակի իրացման համար։ Այլ խոսքով 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի և սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի միջև ստեղծվում է ոչ հակամարտ հակասություն, որը հաջողությամբ հաղթահարվում է այդ նպատակի իրացման բոլոր ասպեկտների օպտիմալ զուգակցման միջոցով։

1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի հետ բարձրագույն նպատակի հարաբերակցությունը չպետք է հասկանալ որպես վերջինիս երկարաժամկետ ասպեկտների հասարակայնորեն անհրաժեշտ նախընտրություն նրա միջին և կարճաժամկետ ասպեկտների նկատմամբ։ Ժողովրդի ապագա բարեկեցությունն ավելի նախընտրելի չէ այսօրվանից։ Խոսքն այն մասին է, որ ժողովրդի բարեկեցության յուրաքանչյուր առաջադիմություն հնարավոր է միայն հասարակության արտադրողական ուժերի զարգացման, արտադրության միջոցների արտադրության համար այդպիսի միջոցների արտադրության շնորհիվ։ Եվ քանի որ ժողովրդի բարեկեցության աճը սոցիալիստական հասարակության օբյեկտիվ պահանջն է, իսկ արտադրողական ուժերի զարգացումն իրականացվում է 1-ին ստորաբաժանման միջոցով, ապա կարելի է պնդել, որ վերջինիս առավելագույն զարգացումն ընթացիկի համեմատությամբ ապագա սպառման նախընտրություն չէ, այլ ժողովրդի բարեկեցության բարձրացման օբյեկտիվ անհրաժեշտության յուրահատուկ դրսևորում՝ հատկապես հասարակական արտադրության ինտենսիվացման պայմաններում։

Այսպիսով, առավելագույն զարգացման քննարկվող օրենքի մեկնաբանումը (ի տարբերություն «առաջանցիկ աճի»), ունի այն ակներև առավելությունը, որ հնարավորություն է ընձեռում ոչ միայն խուսափել սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի հետ նրա ուղղակի «բախումից» կամ «անհամատեղելիությունից», այլև այն օգտագործել որպես այդ նպատակի իրացման հակասությունների լուծման միջոց։ Այլ կերպ ասած, 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման կոնցեպցիան հնարավորություն է տալիս բարձրագույն նպատակի իրացման կարճաժամկետ, միջին և երկարաժամկետ ասպեկտները օրգանապես կապակցել դրանց տրամաբանական վերարտադրողական հաջորդականությամբ։ 1-ին ստորաբաժանման գերադասելի զարգացումն ապահովում է բարձրագույն նպատակի իրացման բոլոր ասպեկտների փոխկապակցվածությունը, հաշվեկշռվածությունը և առաջավոր տեխնիկական բազայի հիման վրա այդ պրոցեսի կենսագործումը։

Ասվածից կարելի է հանգել 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման կոնցեպցիայի ևս մեկ կարևոր առանձնահատկությանը։ Օրենքի այս մեկնաբանումը ենթադրում է, որ հասարակական պահանջմունքների զարգացման և գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների հիման վրա 1-ին ստորաբաժանման զարգացման էական շարժառիթը դառնում են ներքին կառուցվածքային փոփոխությունները։

Ընդհանուր առմամբ «առավելագույն զարգացման» մեկնաբանումը, որպես 1-ին և 2-րդ ստորաբաժանումների դինամիկ փոխառնչության ձև, ենթադրում է ստորաբաժանումներից յուրաքանչյուրի ներքին կառուցվածքի և աճի տեմպերի վրա ազդող գործոնների զգալիորեն ավելի լայն շրջանակի քննարկման հնարավորություն ու անհրաժեշտություն։ Ներառելով «առաջանցիկ զարգացումը» որպես դրսևորման հնարավոր, սակայն ոչ պարտադիր ձև, «առավելագույն զարգացումը» նշված վերարտադրողական փոխառնչության քանակական ասպեկտի հետ ընդգրկում է նաև նրա որակական ասպեկտը։ Դա նշանակում է 1-ին ստորաբաժանման արտադրանքի տեխնիկատնտեսական մակարդակի անընդմեջ բարձրացում մինչև գիտատեխնիկական առաջադիմության բարձրագույն նվաճումները, որոնք կապահովեին ա) սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերի անհրաժեշտ մակարդակ, բ) արտադրության հետևողականորեն ինտենսիվացում և նրա արդյունավետության աճ, գ) վերարտադրության պրոցեսում արտադրության բոլոր գործոնների հաշվեկշռվածություն, դ) առաջնության և կոմպլեքսայնության սկզբունքների օպտիմալ զարգացում։ Այսպիսով, նմանօրինակ, այսինքն «առավելագույն զարգացման» մեկնաբանման մեջ տվյալ օրենքը ձեռք է բերում ավելի ընդհանուր և բազմակողմանի բնույթ, որը բխում է հասարակական արտադրության երկու ստորաբաժանման մասին Մարքսի ուսմունքից։

1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի գործողության բնույթը քննարկելիս, բազմաթիվ հետազոտողներ նրանում ընդգծել են յուրահատուկ, «տեխնիկական» և «սոցիալական» շարժառիթների առկայությունը։ Նշված, ինչպես նաև այլ տնտեսական օրենքների գործողության՝ «տեխնիկական» և «սոցիալական» կողմերի ծայրահեղ հակադրումն անհիմն է։ Դա առանձնապես ակնառու է արդի

պայմաններում, երբ ուժեղանում է հիմնական տնտեսական օրենքի և սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակի պահանջներին ժողովրդատնտեսական համամասնությունների համակարգի լրիվ համապատասխանության անհրաժեշտությունը:

Տնտեսագիտական գրականության մեջ արդեն նշվել է, որ հասարակական արտադրության տրոհումը 1-ին և 2-րդ ստորաբաժանումների ունի ոչ միայն վերարտադրողական, այլև որոշակի ինքնուրույն սոցիալական իմաստ: Վերջինս յուրահատուկ է և՛ կապիտալիզմին և՛ սոցիալիզմին, որը մի անգամ ևս ընդգծում է կոնկրետ պատմական պայմաններում երկու ստորաբաժանման պրոբլեմի սերտ փոխառնչությունը հասարակական արտադրության բարձրագույն նպատակի հետ:

Կապիտալիստական հասարակարգում 1-ին և 2-րդ ստորաբաժանումների միջև համամասնությունների կազմավորումը դրսևորվում է որպես աշխատանքի ու կապիտալի հակասության ձևերից մեկը: Կապիտալիստական արտադրության բուն նպատակն է սոցիալական հիմք ստեղծել 2-րդ ստորաբաժանման զարգացման դինամիկան 1-ից անջատելու համար: Այսպիսով, կապիտալիզմի պայմաններում երկու ստորաբաժանման հակասությունը հասարակության, զարգացող արտադրողական ուժերի և ժողովրդական սպառման լճացող մակարդակի հակասություն է:

Սոցիալիստական արտադրության սոցիալական պայմանները և բարձրագույն նպատակը ռեալ նախադրյալներ են ստեղծում 1-ին ստորաբաժանման «ինքնանպատակ» զարգացման միտումը հաղթահարելու համար: Դա օբյեկտիվորեն բխում է տեխնիկական առաջադիմության հիման վրա տնտեսական աճի բարձր ու կայուն տեմպերի պահպանման, աշխատավորների նյութական և հոգևոր բարեկեցության բարձրացման նյութական նախադրյալների ստեղծման նպատակից: Սոցիալիզմի օրոք «1-ին և 2-րդ ստորաբաժանումների հակասության հաղթահարումը հասարակական արտադրության նպատակային հարցադրումների արմատական փոփոխման, հիմնական տնտեսական օրենքի գործողության արդյունքն է» (Дементьев В. Е., Сухотин Ю. В. О динамике двух подразделений общественного производства (Методологический аспект). Экономико-математические методы. 1985 Вып. 3, стр. 526—527):

Միաժամանակ, երկու ստորաբաժանման համեմատական դինամիկայի և կառուցվածքի վերարտադրության սոցիալական ձևի ներգործության չափազանց մեծացումը տեսականորեն անհիմն և գործնականորեն վտանգավոր կլիներ, ինչպես և այդ ներգործության ընդհանրապես անտեսումը: Երկու ստորաբաժանման պրոբլեմը վերլուծելիս արտադրության սոցիալական կողմի ծայրահեղ ֆետիշացումը 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի և սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակն անհամապատասխանության մասին թեզն է (Шаталин С. С. Соотношение двух подразделений общественного производства. М., Наука, 1983, стр. 9—10).

Սոցիալիստական արտադրության նպատակի «նեղ սպառողական» մեկնաբանման պրոբլեմը հանգում է երկու ստորաբաժանման համեմատական դինամիկայի սոցիալական կողմի «թելադրանքին»: Այդպիսի մոտեցումը մեթոդաբանական բազմաթիվ լուրջ սխալների պատճառ է դառնում: Եվ, իհարկե, դրանցից գլխավորը հասարակական արտադրության սոցիալական ձևի և բարձրագույն նպատակի, ինչպես նաև նրանց յուրահատուկ ժողովրդատնտեսական համամասնությունների խզումն է արտադրողական ուժերի զարգացումից, տեխնիկական առաջադիմության ձեռք բերված մակարդակից և հիմնական ուղղություններից, բոլոր վերարտադրողական պրոցեսների ռեսուրսապահովվածության վիճակից:

Այսպիսով, սոցիալիզմի օրոք հասարակական արտադրության երկու ստորաբաժանման զարգացման և համապատասխանաբար 1-ին ստորաբաժանման առավելագույն զարգացման օրենքի սոցիալական կողմը պահանջում է ոչ թե տնտեսական աճի օբյեկտիվ օրինաչափությունների և գիտատեխնիկական առաջադիմության անտեսում, այլ դրանց արդյունքների հետևողական կիրառում սոցիալիստական հասարակության համակողմանի առաջադիմության, նրա անդամների նյութական ապահովվածության աճի, սոցիալական արդարության սկզբունքների հաստատման, յուրաքանչյուր միութենական հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման առանձնահատկությունների հետ համամիութենական շահերի օրգանական կապակցման համար:



# ԱՌԱՋԻՆ ՄԵԾՈՒԹՅԱՆ ԱՍՏՂԸ

ԱԿԱԴԵՄԻԿՈՍ
ՎԻԿՏՈՐ
ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ
ԾՆՆԴՅԱՆ
80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



ԱՍՏՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ բավականին հարուստ է խոշոր մտածողների անուններով, որոնք իրենց գործունեությամբ որոշիչ ազդեցություն են ունեցել շրջակա աշխարհի վերաբերյալ մարդկային պատկերացումների ձևավորման վրա: Դրանց թիվն ավելացավ նաև XX դարում, երբ մեծ թափով սկսեց զարգանալ աստղագիտության ժամանակակից ճյուղերից մեկը՝ աստղաֆիզիկան: Ինչպես միշտ, գիտության վերելքի ու ծաղկման շրջանը գիտական կարևոր նվաճումների հետ միասին ի պահ ժամանակի է հանձնում նաև համեմատաբար ավելի մեծ թվով անուններ: Եվ այսօր, մեր հարյուրամյակի ավարտին դեռ չհասած, կարող ենք տալ մեկ-երկու տասնյակից ոչ պակաս գիտնականների անուններ, որոնք էապես հարստացրին XX դարի աստղագիտությունը, որոնց շնորհիվ աստղաֆիզիկան բարձրացվեց որակապես նոր մակարդակի:

Եվ այնուամենայնիվ, փորձելով ինչ-որ ընդհանուր գնահատականներ գտնել և համեմատել նրանց գործունեության արդյունքները, մենք հանգում ենք այն եզրակացության, որ նրանցից քչերը կարող են համեմատության մեջ դրվել ակադեմիկոս Վիկտոր Համազասպի Համբարձումյանի ստեղծած գիտական ժառանգության հետ: Այդ առթիվ մեր ժամանակների խոշորագույն ֆիզիկոսներից մեկը՝ Նոբելյան մրցանակի դափնեկիր Սուբրահմանյան Չանդրասեկարը գրել է. «Մեր դարի աստղագետներից իր հաստատությամբ ու աստղագիտությանը նվիրվածությամբ միայն մեկը՝ պրոֆեսոր Յան Օորտը կարող է համեմատվել ակադեմիկոս Համբարձումյանի հետ, սակայն մնացած ամեն ինչում նրանք տարբերվում են միմյանցից: XXI դարի պատ-

մաքանների համար այդ երկու խոշոր գիտնականների համեմատումն ու համադրումը կդառնա պատվավոր թեմա»:

Կարելի է համոզված լինել, որ Համբարձումյան-գիտնականն ու Համբարձումյան-մարդը դեռևս կենթարկվեն ամենամանրակրկիտ ու բազմակողմանի գիտական ուսումնասիրության, նրա մասին կտպագրվեն բազմաթիվ աշխատություններ, կլինեն նաև գիտական վեճեր, սակայն ամեն դեպքում մարդկության համար ամենակարևորը մնում է այն, ինչ նա տվել է գիտությանն ու աշխարհին: Իսկ նա, որ արդեն ստեղծել է հսկայական գիտական ժառանգություն աստղաֆիզիկայի ամենատարբեր բնագավառներում, այսօր էլ շարունակում է իր ակտիվ գիտական գործունեությունը ոչ միայն որպես իր իսկ հիմնադրած աստղաֆիզիկական դպրոցի ղեկավար ու խորհրդատու, այլ նաև որպես իր կոչմանը նվիրված անխոնջ գիտնական...

Գիտնականի աշխատանքի ու վաստակի մասին խոսելիս առաջին հերթին անհրաժեշտ է որոշ պատկերացում տալ այն գիտության առանձնահատկությունների մասին, որով զբաղվում է տվյալ անձը: Այս դեպքում խոսքը վերաբերում է աստղագիտությանը կամ, ավելի ճիշտ, նրա մերօրյա զարգացող ճյուղերից մեկին՝ աստղաֆիզիկային, որը, ինչպես անվանումն է հուշում, զբաղվում է տիեզերական մարմինների ֆիզիկայի հարցերով: Ֆիզիկայի մյուս բնագավառներից այն նախ և առաջ տարբերվում է նրանով, որ աստղաֆիզիկոսը հնարավորություն չունի կատարել իր նպատակներին համապատասխան գիտափորձեր, դրանց արդյունքների համեմատում և այլն: Նա կարող է միայն դիտել այն, ինչ տեղի է ունենում Տիեզերքում՝ իր տեսակի մեջ միակ այդ ֆիզիկական լաբորատորիայում, ուր տեղի ունեցող պրոցեսները միշտ չէ, որ կարելի է վերարտադրել երկրային լաբորատորիաներում: Մի կողմից, այդ պրոցեսները հսկայական հետաքրքրություն են ներկայացնում ընդհանրապես նյութի ֆիզիկական հատկությունների ուսումնասիրության իմաստով, մյուս կողմից՝ դրանց իմացությունն անհրաժեշտ է երկնային մարմինների էվոլյուցիայի օրինաչափությունները հասկանալու համար: Իսկ ուսումնասիրվող մարմիններից ինֆորմացիան Երկիր է հասնում միայն մի ճանապարհով՝ նրանց ճառագայթած կամ անդրադարձրած էլեկտրամագնիսական ալիքների միջոցով: Նշանակում է, հնարավորին չափ լրիվ ինֆորմացիա ստանալու համար պետք է ձգտել առավելագույն չափով ավելացնել այդ ալիքների գրանցման հնարավորությունները, ապա նաև ճշգրիտ մեթոդներ մշակել այդ գրանցումներից աստղաֆիզիկական տեղեկություններ քաղելու նպատակով:

Միայն դրանից հետո են սկսվում ստացված ինֆորմացիայի աստղագիտական իմաստավորումն ու տեսական մեկնաբանությունը, որոնք իրենց հերթին հիմք են ծառայում օրինաչափությունների որոնման, տեղի ունեցող ֆիզիկական պրոցեսների բացահայտման համար: Հիմնականում հետազոտական աշխատանքի այս վերջին փուլի արդյունքներն են հենց վերածվում աստղաֆիզիկական ինֆորմացիայի, ինչը և կազմում է Տիեզերքի վերաբերյալ մեր պատկերացումների հիմքը:

Ցանկացած անհատ, որպես այդպիսին, սկսում է ձևավորվել ամենավաղ տարիքում և նրա ապագա կյանքը շատ բանով կախված է նրանից, թե ինչպիսի պայմաններում է կատարվել անհատականության ձևավորումը: Այս տեսակետից բնությունը բարեհաճ է գտնվել Վիկտոր Համբարձումյանի հանդեպ՝ նախ նրան օժտելով արտակարգ բնածին ընդունակություններով, ապա նաև՝ լուրջ ծնողական ուշադրությամբ: Բնածին օժտվածությունն առանձին դեռևս բավական չէ գիտության բարձունքներին հասնելու համար, անհրաժեշտ է նաև ընդունակությունների, աշխատասիրության դաստիարակում: Այդպիսի դաստիարակություն նա ստացավ հորից՝ Համազասպ Համբարձումյանից: Լինելով անտիկ աշխարհի հմուտ գիտակ՝ Համազասպ Համբարձումյանը սիրում ու հարգում էր նաև բնական գիտությունները և առանձնահատուկ ուշադրություն էր դարձնում մտածողության տրամաբանականությանը: Նա ուշիուշով հետևում էր որդու մտածողության զարգացմանը, իրադրությունների պատճառահետևանքային հաջորդականությունը ճիշտ որոշելու ունակությունների դաստիարակմանը՝ դրանք համարելով ճշգրիտ մտածողության հիմնական գրավականը: Անկասկած, դա ևս կարևոր նշանակություն ունեցավ բնությունից օժտված երեխայի հետագա ամբողջ գործունեության համար: Ուսումնասիրելով նրա արդեն ավելի քան վաթսունամյա գիտական գործունեության արգասիքները, կարելի է համոզվել, որ Համբարձումյան-գիտնականի հետազոտությունների թերևս ամենահրաշալի առանձնահատկությունը դրանց խիստ տրամաբանվածությունն ու խնդիրներին ներքին լուծումներ գտնելու ունակությունն է, որը նրան միշտ թույլ է տվել ինքնատիպ լուծումներ գտնել:



Գիտության ցանկացած բնագավառ, իսկ աստղաֆիզիկան իր առանձնահատկություններով առավել ևս, ունի իմաստավորման բազմամակարդակ կառուցվածք: Գիտությամբ զբաղվող մարդկանց հիմնական մասն աշխատում է արդեն մշակված մեթոդներով լուծել արդեն ձևակերպված խնդիրները, զգալի չափով ենթարկվելով գոյություն ունեցող պատկերացումների իներցիային: Այստեղ որոշիչ դեր են կատարում նաև ընդունված գիտական հեղինակությունների արտահայտած կարծիքները: Որպես օրինակ, կարելի է հիշել, թե ինչպես էր ավելի քան մեկուկես հազարամյակ մարդկանց մտքերի վրա իշխում աշխարհի կառուցվածքի երկրակենտրոն մոդելը, որը գտնվում էր Արիստոտելի հեղինակավոր հովանավորության տակ: Եվ միայն Կոպեռնիկոսին հաջողվեց վերջնականապես թոթափել այդ ահավոր ճնշումը մտածողության վրա ու առաջարկել հիմնավորված արեգակնակենտրոն աշխարհի կառուցվածքի մոդել: Մարդկային պատկերացումների, աշխարհայացքի զարգացման պրոցեսում դա մեծագույն հեղափոխություններից մեկն էր, որն իր հերթին խթանեց գիտության մի հսկայական բնագավառի հետագա առաջընթացը...

Խոսելով Վիկտոր Համբարձումյանի գիտական գործունեության մասին, առաջին հերթին անհրաժեշտ է ուշադրություն դարձնել նմանօրինակ նշանակություն ունեցած հետազոտությունների վրա, որոնք քիչ չեն նրա գիտական ժառանգության մեջ: Առաջին աշխատանքը տպագրելով ընդամենը տասնութ տարեկան հասակում, երբ դեռ սովորում էր Լենինգրադի պետական համալսարանում, նա կարճ ժամանակում հեղինակ դարձավ աստղաֆիզիկայի, մաթեմատիկայի ու տեսական ֆիզիկայի տարբեր հարցերին նվիրված մի շարք գիտական հոդվածների, որոնք արագորեն ճանաչում բերեցին երիտասարդ գիտնականին: Նրա բազմակողմանի ակտիվ գիտական աշխատանքը շարունակվեց նաև Պուլկովոյի աստղադիտարանի ասպիրանտուրայում՝ ակադեմիկոս Արիստարխ Բելոպոլսկու ղեկավարությամբ ուսանելիս, որից հետո, արդեն որպես դասախոս ու գիտական աշխատող, նա կրկին վերադարձավ Լենինգրադի համալսարան:

Դժվար է մի քանի բառով բնութագրել Վիկտոր Համբարձումյանի այդ տարիների գիտական հետաքրքրության առարկան: Այն աչքի էր ընկնում բազմազանությամբ, սակայն ընդհանուր ուղղվածությունը տիեզերքում տեղի ունեցող երևույթների ֆիզիկական տեսության ստեղծումն էր, որը նոր միայն ստանում էր տեսական աստղաֆիզիկա անվանումը: Նրա նախաձեռնությամբ համալսարանում կազմակերպվեց մեր երկրում աստղաֆիզիկայի առաջին ամբիոնը, որը նա ղեկավարեց 13 տարի: Միաժամանակ, ընդամենը քսանվեց տարեկան հասակում, նրան շնորհվեց պրոֆեսորի կոչում: Նորաստեղծ ամբիոնում երիտասարդ պրոֆեսորի շուրջը համախմբվեցին ուսանողներ ու ասպիրանտներ, որոնք հրապուրված էին ինչպես իրենց ուսուցչի անձով, այնպես էլ նոր-նոր ձևավորվող գիտությամբ: Այդ տարիների մասին նրա աշակերտներից մեկը՝ Վիկտոր Սոբոլևը, որը հետագայում ընտրվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, հիշում է. «Դժվար է մոռանալ բովանդակությամբ այնքան խոր ու ձևով այնքան պարզ դասախոսությունները: Բայց ամենից ավելի մեզ հրապուրում էր առարկայի թարմությունը: Տեսական աստղաֆիզիկան շատ երիտասարդ գիտություն է, և Համբարձումյանը նրա ստեղծողներից մեկն է»: Կարելի է նաև ավելացնել, որ լինելով տեսական աստղաֆիզիկայի ստեղծողներից մեկն ընդհանրապես, Համբարձումյանն իրավամբ համարվում է այդ բնագավառի հիմնադիրը մեր երկրում:

1935 թվականին երիտասարդ պրոֆեսորին առանց դիսերտացիայի պաշտպանության շնորհվեց նաև ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտորի աստիճան, դրանով մեկ անգամ ևս պաշտոնապես հավաստելով նրա գիտական բարձր հեղինակության ընդունումը: Նույն թվականին սկսվեց նրա հրապարակային գիտավեճը անգլիացի հայտնի աստղագետ Ջեմս Ջինսի հետ, որտեղ խնդրո առարկա էր մեր Գալակտիկայի տարիքը: Բանն այն է, որ Ջինսը, ելնելով կրկնակի աստղերի ուղեծրերի իր կատարած վիճակագրական ուսումնասիրության արդյունքներից, եկել էր այն եզրակացության, որ մեր Գալակտիկան տասը տրիլիոն տարեկան է: Գալակտիկայի տարիքի այդ գնահատականը, որն անվերապահորեն ընդունում էին բոլոր

աստղագետները, ստացել էր ժամանակի երկար սանդղակ անվանումը: Ավելի մանրակրկիտ ուսումնասիրության ենթարկելով նույն օբյեկտները, Համբարձումյանը ցույց տվեց, որ ֆիզիկական անճշտություն կա Ջինսի ելակետային ենթադրությունների մեջ: Իսկ խնդրի ճիշտ քննարկումը թույլ տվեց ապացուցել, որ մեր Գալակտիկայի տարիքն իրականում հազար անգամ ավելի փոքր է, քան տալիս էր Ջինսի գնահատականը:

Այս գիտավեճը և տակավին երիտասարդ Վիկտոր Համբարձումյանի հաղթանակը, վերստին հաստատեցին, որ աստղաֆիզիկական գիտություն է մուտք գործել վիթխարի հնարավորություններով օժտված գիտնական: Մյուս կողմից, Գալակտիկայի տարիքի ճշտումն ուներ նաև խոշոր աստղագիտական նշանակություն, ապացուցելով, որ մեր Գալակտիկան դեռևս չափազանց հեռու է վիճակագրական հավասարակշռության իրադրությունից...

Վիկտոր Համբարձումյանի գիտական գործունեության կարևոր առանձնահատկություններից մեկն այն է,որ նա ժամանակի որոշակի հատվածներում զբաղվել է իրարից խիստ տարբերվող խոշոր աստղագիտական խնդիրներով: Մի քանի տարվա աշխատանքի շնորհիվ նրան հաջողվել է կամ վերջնական լուծում տալ խնդրին, կամ բավականաչափ առաջ տանել այն և գիտական գործունեության նոր ճակատ բացել, որից հետո, որոշ չափով սպառելով հետաքրքրությունը, նա անցել է այլ խոշոր խնդրի դիտարկման: Ճիշտ է, տարիներ անց նա երբեմն կրկին անդրադարձել է նախկինում իր դիտարկած խնդիրներին՝ լուծման ավելի կատարյալ եղանակ առաջարկելու կամ նորահայտ դիտողական փաստերի հիման վրա ավելի վաղ ստացած արդյունքներն ստուգելու համար, բայց դրանք, կարծես թե, եղել են նրա գիտական ընդհանուր գծից շեղումներ...

Այդպիսի մի խոշոր ուղղություն էր Գալակտիկայի միջաստղային կլանող նյութի կառուցվածքի ու բնույթի պարզաբանմանը նվիրված հետազոտությունների շարքը: 30-ական թվականների վերջերին բազմաթիվ հարցեր էին կուտակվել Գալակտիկայի հարթության մեջ դիտվող կլանող նյութի վերաբերյալ, որոնք լուծում էին պահանջում: Անհրաժեշտ էր պարզել այդ նյութի բաշխման առանձնահատկությունները, առանձին միգամածությունների կապը աստղերի հետ, նրանց թիվը և այլ հարցեր: Համբարձումյանին հաջողվեց ապացուցել, որ մեր Գալակտիկայում իրականում երկու հազար անգամ ավելի շատ փոշեմիգամածություններ կան, քան հնարավոր է տեսնել: Այդ եզրակացությունն իր հերթին հիմք հանդիսացավ ապացուցելու, որ մեր Գալակտիկայի միջաստղային տարածության մեջ լույսը կլանվում է ոչ թե համասեռ փոշեմիջավայրի, այլ առանձին ամպերի բազմության կողմից: Ունենալով այդպիսի ելակետ, Համբարձումյանը ստեղծեց Ծիր Կաթնի պայծառության ֆիզիկական էությունը պարզաբանող չափազանց նրբագեղ ու շատ սրամիտ տեսություն, որը լավ համապատասխանության մեջ էր դիտումների արդյունքների հետ:

1939 թվականին Վիկտոր Համբարձումյանն ընտրվեց ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ: Արդեն անցել էին 1936—38 թվականների չարագույժ տարիները, երբ զանազան մեղադրանքներով դատապարտվեցին ու պատժվեցին նրա մի քանի մերձավոր ընկերները, երբ սկզբունքայնության անվան տակ հրեշավոր մեղադրանքներ էին ներկայացնում անմեղ մարդկանց: Ընդամենը վեց ամսվա տարբերությամբ տեղի ունեցած երկու ժողովներում էլ լսվել էր պրոֆեսոր Վիկտոր Համբարձումյանի հարցը, որին ներկայացված անհեթեթ մեղադրանքների թվում կար նաև այն, թե նա քայքայում է աստղաֆիզիկայի ամբիոնը...

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Վ. Համբարձումյանն արդեն աշխատում էր որպես Լենինգրադի պետական համալսարանի գիտական աշխատանքների գծով պրոռեկտոր: Պատերազմի առաջին օրը նա անհրաժեշտ կարգադրություններ արեց համալսարանը պատերազմական դրությանը համապատասխան գործունեության անցնելու համար, իսկ հաջորդ օրը ներկայացավ շրջանի զինվորական կոմիսարին՝ իրեն գործող բանակ վերցնելու խնդրանքով: Կոմիսարի հրամանով նա ուղարկվեց Լենինգրադի արվարձաններում ձևավորվող զինվորական ստորաբաժանումներից մեկը:: Գուցեև այս փոքր դրվագն առանձնապես կարևոր նշանակություն չունի գիտնականի կենսագրության մեջ: Առավել ևս, որ զինվորական ղեկավարությունը գիտությունների ակադեմիային բավականին արագ տեղեկացրեց այդ մասին, և նա հետ կանչվեց գործող բանակից, որպեսզի ստանձնի իր ընդունակությունների



համար ավելի հարմար և երկրի համար ավելի կարևոր աշխատանք՝ Լենինգրադի համալսարանի գիտական մասնաճյուղի կազմակերպումն ու ղեկավարումը թիկունքում: Եվ, այնուամենայնիվ, Համբարձումյան-մարդու էության մեջ մի փոքր ավելի խոր թափանցելու համար այս մանրամասնությունը կարևոր է. ցանկացած պարագայում նա միշտ էլ գերադասել է գործով արտահայտել իր սկզբունքներն ու հավատամքը...

Թաթարական Ինքնավար Հանրապետության Ելաբուգա քաղաքում, անհրաժեշտ սարքավորումներով հագեցած կենտրոններից հեռու, սկսեց գործել Լենինգրադի համալսարանի առավել տաղանդավոր աշխատակիցներից կազմված գիտական մասնաճյուղը,որն իրականացնում էր տեսական ու պաշտպանական նշանակության հետազոտություններ: Մասնաճյուղի ղեկավարն ինքը, բացի կազմակերպչական աշխատանքներից, որոնք անսովոր իրադրության մեջ հսկայական ժամանակ էին խըլում, կրկին անդրադարձավ լույսի բազմապատիկ ցրման տեսության խնդիրներին: Դրանք գիտական գործունեության սկզբից ևեթ հետաքրքրում էին նրան և այդ ասպարեզում նա արդեն հասել էր որոշակի արդյունքների: Այստեղ, պատերազմական թիկունքի այս ծանր պայմաններում, մի անգամ ևս հստակորեն արտահայտվեց հին խնդիրներին նորովի մոտենալու նրա անգնահատելի ընդունակությունը: Ելնելով պարզ ֆիզիկական դատողություններից, Վ. Համբարձումյանը նոր ձևակերպում տվեց մեծ հետաքրքրություն ներկայացնող այդ հայտնի պրոբլեմին և կարողացավ այն հանգեցնել լուծման համար անհամեմատ ավելի հարմար տեսքի հավասարումների:

Որոշ առումով Համբարձումյանի նոր մոտեցումը հեղաշրջող նշանակություն ունեցավ տեսական աստղաֆիզիկայի այս բնագավառում: Իսկ խնդրի լուծման համար օգտագործված դատողությունների հիմնական սկզբունքը գիտության մեջ արմատավորվեց Համբարձումյանի ինվարիանտության սկզբունք անվան տակ և այսօր էլ կիրառությունների նորանոր ասպարեզներ է գտնում տարբեր գիտությունների ամենաանսպասելի պրոբլեմներում: Այդ սկզբունքի ու նրա արդիականացված զանազան ձևափոխությունների միջոցով լուծվում են աստղաֆիզիկայի, մաթեմատիկական ու տեսական ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի, երկրաֆիզիկայի, մթնոլորտի ֆիզիկայի և այլ բնագավառների ծայրահեղ բարդ խնդիրներ: Պրոբլեմներն ու դրանց համապատասխան մաթեմատիկական ապարատը ավելի ու ավելի են բարդանում, բայց հիմքում միշտ մնում է իր ֆիզիկական պարզությամբ գերող Համբարձումյանի ինվարիանտության սկզբունքը, որի մասին ամերիկյան ճանաչված մաթեմատիկոս Ռիչարդ Բելմանը գրել է. «Համբարձումյանի ինվարիանտության սկզբունքների հետագա զարգացումը հանգեցնում է ինվարիանտ ներդրման տեսությանը: Դա շատ հզոր մեթոդ է մաթեմատիկական ֆիզիկայում և անալիզում»:

Որոշ վերապահումով կարելի է համարել, որ ինվարիանտության սկզբունքի ստեղծումով ավարտվում է Վիկտոր Համբարձումյանի գործունեության լենինգրադյան փուլը: Պատերազմական նույն տարիներին, երբ նա աշխատում էր Ելաբուգայում, Հայաստանում կազմակերպչական աշխատանքներ էին տարվում հանրապետական գիտությունների ակադեմիա ստեղծելու համար: 1942 թվականի գարնանից Երևանում էր գտնվում Էրմիտաժի դիրեկտոր և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Հայաստանի մասնաճյուղի ղեկավար, ակադեմիկոս Հովսեփ Օրբելին, որը հանրապետության կառավարության և անվանի գիտնականների հետ միասին նախապատրաստում էր շատ կարևոր այդ միջոցառումը: Եվ, վերջապես, 1943 թվականի նոյեմբերին ավարտվել էին նախապատրաստական բոլոր աշխատանքները և պատրաստ էր ակադեմիայի հիմնադիր անդամների քսաներեք հոգուց բաղկացած կազմը, որոնց թվում էր նաև Վ. Համբարձումյանը: Նա մեծ ոգևորությամբ ընդունեց այդ որոշումը և անհապաղ ընտանիքով տեղափոխվեց Հայաստան: Չնայած 40-ական թվականներին Երևանը գիտական պոտենցիալով ու հետազոտություններ կատարելու հնարավորությամբ չէր կարող համեմատվել Լենինգրադի հետ, սակայն դա չխանգարեց երիտասարդ ակադեմիկոսին հայրենիք վերադառնալու մասին որոշում ընդունելու համար: Հարցի այլ կողմերից զատ, գոյություն ուներ ամենակարևորը՝ սեփական ժողովրդին օգտակար լինելու, նրա խնդիրներով ու հոգսերով ապրելու ձգտումը: Ընդ որում նա իր այդ ձգտումն արտահայտել էր ակադեմիայի ստեղծումից դեռ տարիներ առաջ, ասելով, որ ինքը երջանիկ կլինի, եթե Հայաստանի գիտությունների ակադեմիայում իր համար գտնվի թեկուզ ավագ գիտաշխատողի պաշտոն:

Նորաստեղծ ակադեմիայի հիմնադիր ժողովը Վ. Համբարձումյանին ընտրեց փոխպրեզիդենտ: Միաժամանակ նրա վրա դրվեց Երևանի աստղադիտարանի դիրեկտորի պարտականությունը: Այն պետք է նախնական փուլում դառնար հանրապետությունում աստղաֆիզիկական հետազոտությունների կենտրոն: Շատ չանցած Երևանի պետական համալսարանում բացվեց աստղաֆիզիկայի ամբիոն, և երիտասարդ ակադեմիկոսին հանձնարարվեց նաև մասնագետ աստղաֆիզիկոսների պատրաստման գործը:

Անհրաժեշտ է նշել, որ չնայած Հայաստանում աստղագիտությունը հազարամյակների պատմություն ունի, պետականության կորստի և երկրի թշնամական անընդմեջ ասպատակությունների պայմաններում այստեղ իսպառ վերացել էին աստղագիտական ավանդույթները: Մի քանի հազարամյակ առաջ, երբ մարդկային միտքը դեռ չէր հասել գիտական իմաստավորման մակարդակի, և աստղային երկնքի նրկատմամբ հետաքրքրությունը զուտ պաշտամունքային նշանակություն ուներ, Հայաստանի տարածքում ստեղծվել էին այն ժամանակների համար զգալի արժեք ներկայացնող մի շարք աստղագիտական կոթողներ: Դրանք և՛ աստղագիտական բնույթի ժայռապատկերներն էին, և՛ պարզունակ պաշտամունքային աստղադիտարաններ, և՛ հայերենով աստղագիտական անվանումներ, և՛ առասպելներ աստղագիտական երևույթների թեմաներով: Այդ բոլորը միասին կազմում էին մի ընդհանրություն և ցույց տալիս աստղագիտական գիտելիքների մակարդակը: Թեպետ աստղագիտության նկատմամբ գիտական մոտեցման առաջին տարրերն ի հայտ էին եկել Անանիա Շիրակացու աշխատություններում, սակայն նա էլ դարձավ միջնադարի հայ վերջին աստղագետ-գիտնականը...

Վիկտոր Համբարձումյանի վերադարձը Հայաստան հնարավորություն ընձեռեց այստեղ վերակենդանացնել աստղագիտությունը, ընդ որում վերակենդանացնել նրա բուռն զարգացող արդիական ճյուղերից մեկի՝ աստղաֆիզիկայի մակարդակով: Ակադեմիկոս Համբարձումյանը նշանակվեց Երևանի աստղադիտարանի դիրեկտոր, բայց սկզբից ևեթ պարզ էր, որ այն չէր կարող ծառայել լուրջ աստղաֆիզիկական հետազոտությունների համար: Այնտեղ չկային ոչ անհրաժեշտ աստղադիտակներ, ոչ սարքավորումներ և ոչ էլ աստղադիտարանի դիրքն էր հարմար դիտումների համար: Այդ պատճառով ՀՍՍՀ ԳԱ նախագահությունը 1946 թվականին որոշում ընդունեց նոր աստղաֆիզիկական դիտարան ստեղծելու մասին, որը կառուցվեց Արագած լեռան լանջին, Բյուրական գյուղի հարավային մասում:

Ակադեմիկոս Համբարձումյանի գիտական հետազոտությունների հայաստանյան փուլը իր բնույթով որոշակիորեն տարբերվում է նրա մինչ այդ կատարած աշխատանքներից: Այս հետևությունը, իհարկե, վերաբերում է գիտական գործունեության ընդհանուր ուղղվածությանը: Սակայն առանձին աշխատանքների թվում, բնականաբար, կան այնպիսիները, որոնք Լենինգրադում նրա կատարած աշխատանքների անմիջական շարունակությունն են: Գործունեության այդ երկու փուլերի հիմնական տարբերությունը, մեր կարծիքով, այն է, որ Բյուրականում իրականացված հետազոտությունները գերազանցապես ֆիզիկական բնույթ ունեն, այն դեպքում, երբ լենինգրադյան աշխատանքներում գերիշխում էր մաթեմատիկական մոտեցումը:

Բյուրականի աստղադիտարանի ստեղծման հետ միասին կյանքի կոչվեցին նաև այն հիմնական սկզբունքները, որոնք դարձան այնտեղ կատարվող գիտական հետազոտությունների կազմակերպման անկյունաքարը: Դրանք բխում էին այն իրողությունից, որ աստղաֆիզիկան առաջին հերթին դիտողական գիտություն է, այսինքն, տիեզերական օբյեկտների մասին տեղեկությունները ստացվում են դիտումներից: Վերջիններս թույլ են տալիս աստիճանաբար կուտակել փաստական նյութ, որոնց հիման վրա միայն կարելի է եզրակացություններ անել տեղի ունեցող երևույթների, ֆիզիկական պրոցեսների և դրանց ղեկավարող ընդհանուր ֆիզիկական օրինաչափությունների մասին: Նման մոտեցման անհրաժեշտությունը, որպես գիտական հավատամք, Համբարձումյանը ձևակերպել է այսպես. «Աստղաֆիզիկան ճշգրիտ բնագիտության մի մասն է, որն ուսումնասիրում է հսկայական, աներևակայելի աշխարհը: Որքան էլ հզոր է մարդկային միտքը, այն ի զորու չէ դեդուկտիվորեն վերարտադրել բնության զարգացման օրենքները՝ ելնելով միայն դատողություններից: Այդ պատճառով էլ աստղաֆիզիկան դիտողական գիտություն է, որն անմիջականորեն հիմնվում է դիտումներից ստացվող փաստերի վրա: Բայց դրա հետ միասին այն



ճշգրիտ գիտություն է՝ հիմնված դիտումների մաթեմատիկական մշակման, նրանցից կատարված մաթեմատիկական արտածումների վրա: Դրա համար այն օգտագործում է ֆիզիկայի հայտնի օրենքները»:

Մյուս կողմից, Բյուրականում առանձնահատուկ ուշադրության արժանացան տարբեր տիեզերական օբյեկտներում տեղի ունեցող անկայունության երևույթները: Լինելով աստղագիտական մասշտաբներով շատ կարճատև, այդ երևույթները թույլ են տալիս համեմատաբար սեղմ ժամանակամիջոցում հիշյալ օբյեկտների զարգացման օրինաչափությունների մասին ստանալ հսկայածավալ ինֆորմացիա, պարզել զարգացման գլխավոր ուղղությունները:

Դեռևս 30-ական թվականներից Վ. Համբարձումյանը մեծ ուշադրություն էր դարձնում աստղային տարբեր տիպի համակարգերի դինամիկային, նրանց առաջացման ու քայքայման հարցերին: Հատկապես մեծ էր նրա հետաքրքրությունը աստղերի առաջացման ասպարեզում՝ այդ համակարգերի ունեցած դերի նկատմամբ: Աստղերի առաջացման պրոբլեմը դարեր շարունակ հուզել է խոշոր բնագետներին: Աստիճանաբար ձևավորվել էր այն պատկերացումը, թե բոլոր աստղերն առաջացել են միաժամանակ, մի քանի միլիարդ տարի առաջ, գազի ու փոշու խտացման հետևանքով, որից հետո այլևս աստղեր չեն գոյանում:

1947 թվականին Համբարձումյանը հանգեց բոլորովին այլ եզրակացության: Նրան հաջողվեց ապացուցել, որ միևնույն դասին պատկանող աստղերից կազմված որոշ աստղախմբեր, որոնց նա տվեց աստղասփյուռներ անվանումը, գտնվում են դինամիկորեն անհավասարակշիռ վիճակում և չեն կարող մի քանի միլիոն տարուց ավելի գոյատևել: Այդքան ժամանակի ընթացքում դրանք պետք է քայքայվեն ու որպես խմբեր վերանան: Մյուս կողմից, պատահական հանդիպումների շնորհիվ նման խմբերի առաջացման հավանականությունը գործնականում հավասար է զրոյի: Հետևապես, մնում է միայն եզրակացնել, որ այդ աստղերն առաջացել են միասին, որից անցել է ոչ ավելի, քան մի քանի տասնյակ միլիոն տարի: Նշանակում է՝ մեր Գալակտիկայում աստղեր են ծնվում նաև աստղագիտական մեր ժամանակաշրջանում:

Աստղասփյուռների հայտնագործումը, աստղագիտական մեր ժամանակներում աստղագոյացման պրոցեսի շարունակման, ինչպես նաև աստղերի՝ խմբերով առաջանալու փաստի հաստատումը արմատապես փոխեցին մեր պատկերացումները չափազանց կարևոր այս խնդրի վերաբերյալ: Աստղերի էվոլյուցիայի խնդիրներով զբաղվող աստղագետների համար դա նաև աշխարհայացքի փոփոխություն էր, իրենց ունեցածին տրամագծորեն հակառակ տեսակետների ընդունման անհրաժեշտության գիտակցում, որը չէր կարող ցավագին չընդունվել նրանց կողմից:

Աստղառաջացման վերաբերյալ նոր պատկերացումների ստեղծման հետ կապված՝ Վիկտոր Համբարձումյանը առաջ քաշեց մի կարևոր գաղափար ևս: Դա, այսպես կոչված, նախաստղային գերխիտ նյութի գոյության մասին վարկածն էր, որն անմիջականորեն բխում էր կատարված հայտնագործությունից: Ըստ այդ վարկածի, աստղերն առաջանում են սովորական նյութի համեմատությամբ չափազանց մեծ, ատոմային միջուկների խտությամբ օժտված նյութի տրոհման հետևանքով: Փաստորեն դրանով առաջարկվում էր էլ ավելի խորանալ նյութի հատկությունների ուսումնասիրության մեջ, փորձել ֆիզիկական նոր օրինաչափություններ հայտնաբերել արդեն հայտնի օրենքներով չբացատրվող երևույթները մեկնաբանելու համար: Չէ՞ որ գիտության զարգացման ցանկացած մակարդակում հայտնի ֆիզիկական օրենքներն արտացոլում են այն օրինաչափությունները միայն, որոնք հնարավոր է եղել հայտնաբերել խիստ որոշակի ֆիզիկական պայմաններում, և ամենևին պարտադիր չէ, որ դրանք գործեն այդ պայմանների փոփոխման ժամանակ:

Հետագայում Վիկտոր Համբարձումյանին հաջողվեց նաև տեսականորեն ապացուցել գերխիտ նյութի գոյության հնարավորությունը: Պարզվեց, որ երկրային պայմաններում ծայրահեղ անկայուն այդպիսի նյութը որոշակի իրավիճակում ձեռք է բերում կայունություն, և Տիեզերքում կարող են գոյություն ունենալ այդպիսի նյութի հսկայական զանգվածներ: Շատ ավելի ուշ, 1968 թվականին հայտնաբերվեցին նոր տիպի տիեզերական մարմիններ՝ պուլսարները, որոնք, ամենայն հավանականությամբ, հենց գերխիտ նյութից են կազմված:

Անվանի մարդկանց մասին կարելի է գրել անվերջ, այդպես էլ չհասնելով նրանց ավարտուն դիմանկարի ստեղծմանը: Ցանկացած պարագայում մնում են չբացահայտված բազմաթիվ կարևոր մանրամասներ, որոնք նույնպես անհրաժեշտ են այդ անհատականությանը ավելի խոր ճանաչելու, նրա կյանքի սխրանքը պատկերացնելու համար: Պարզապես ժողովուրդն անհայտ մի զգայարանով է սկսում ընկալել այդպիսի մարդուն, ընկալում է որպես իր պատմության շատ կարևոր մի մաս, անցյալն ու ապագան միացնող անհրաժեշտ օղակ, որը դառնում է տվյալ ժամանակաշրջանի խորհրդանիշ:

Այսօր էլ Սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, կառավարական ու գիտական բազմաթիվ բարձր պարգևների արժանացած ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը շարունակում է իր ակտիվ գիտական ու կազմակերպչական գործունեությունը, և աշխարհի բոլոր ծագերում ուշադրությամբ ունկնդրում են նրա կարծիքին: Ունկնդրում են, որովհետև այն ամենը, ինչ ստեղծել է նա, իր հետ միասին ծնել է նաև հավատ ու վստահություն: Իսկ նրա աշակերտները, նրա ստեղծած Բյուրականյան դպրոցի բոլոր ներկայացուցիչները, ողջ հայ ժողովուրդը ուրախ են, որ, լինելով աշխարհի երկուսուկես տասնյակ գիտությունների ակադեմիաների ու գիտական ընկերությունների անդամ, բազմաթիվ հայտնի համալսարանների պատվավոր դոկտոր, նա առաջին հերթին մնում է իր ժողովրդի գիտության կաճառի ներկայացուցիչը: Մնում է իր ժողովրդի բոլոր հոգսերով ապրելու պատրաստ զավակը...

**Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու, Բյուրականի աստղադիտարանի դիրեկտորի գիտական աշխատանքների գծով տեղակալ**

---



# 26-Ի ՀԵՐՈՍԱԿԱՆ ՍԽՐԱՆՔԸ

**Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**

1918 Թ. ԲԱՔՎԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ կոմունայի, նրա ղեկավարների և գործիչների մասին հրսկայական գրականություն է ստեղծվել՝ թե՛ փաստագրական, թե գեղարվեստական: Նկարահանվել են ֆիլմեր: Սակայն, ինչպես մեր հայրենիքի պատմության շատ հարցերում, այնպես էլ նրա փառապանծ էջը հանդիսացող Բաքվի կոմունայի գործունեության լուսաբանման խնդրում դեռևս կան շատ «սպիտակ բծեր», որոնց վերացումը սովետական պատմագիտության կարևորագույն խնդիրներից է: Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում տարածված և իշխող էր այն միտումնավոր տեսակետը, որ իբր Բաքվի կոմունայի ղեկավարները չկարողացան իրականացնել Ստալինի «իմաստուն ցուցումները» և լուրջ սխալներ թույլ տվեցին: Դրանց մեջ նշվում էին Ս. Շահումյանի գլխավորած Բաքվի ժողկոմխորհի հրաժարականը, Բաքվից կոմիսարների էվակուացիայի ներքարկվելը, բանվորների և գյուղացիների ամուր դաշինք չստեղծելը, անհետևողականությունը կոմունիստական կուսակցության լենինյան ագրարային ու ազգային քաղաքականության կենսագործման ուղղությամբ և այլն: Այս խեղաթյուրումները հիմնավորում էին Ստալինի դրածոները, հատկապես Բերիան ու Բաղիրովը: «Բաքվի ժողկոմխորհի ղեկավարների աշխատանքում սխալն այն էր,— գրում էր այն ժամանակ Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Մ. Բաղիրովը,— որ նրանք չկարողացան իրականացնել ընկեր Ստալինի ցուցումները: Չկարողացան ժամանակին վերջ տալ օտարերկրյա իմպերիալիստների էսէռամենշևիկյան, դաշնակցական գործակալների հակահեղափոխական ագիտացիային»: Բաղիրովը «մոռանում» էր նշել օտարերկրյա իմպերիալիստների գործակալ մուսավաթական կուսակցության հակահեղափոխական դերը, Ղարաբաղում գեներալ նահանգապետ կարգված հայատյաց Խոսրովբեկ Սուլթանովի ջարդարարությունները: Լճացման տարիներին քողարկված կերպով նույն գիծն էր շարունակում Հ. Ալիևը:

Ջնայած ՍՄԿԿ XX և XXII համագումարներից հետո անցյալում թույլ տված մի շարք սխալներ և խեղաթյուրումներ ուղղվեցին, սակայն Բաքվի կոմունայի պատմության և Ս. Շահումյանի՝ որպես նրա ղեկավարի գործունեության, թերագնահատումը դեռևս լիովին չի հաղթահարված: Լճացման տարիներին հրատարակված «ՍՄԿԿ պատմության» բազմահատորյակում միջազգային նշանակություն ունեցող Բաքվի կոմունային հատկացված է ընդամենը մեկ էջ, այն էլ նրա պարտության և 26 կոմունարների գնդակահարության կապակցությամբ:

Մեր նպատակն է վերականգնել Վ. Ի. Լենինի և նրա կենդանության տարիներին Բաքվի կոմունայի ու նրա ղեկավար և կազմակերպիչ Ստեփան Շահումյանի գործունեության լենինյան գնահատականը, շրջանառության մեջ դնել ցայսօր արգելված մի շարք նյութեր:

Ստեփան Գևորգի Շահումյանը (1878—1918) ՌՍԴ(բ)Կ շարքերն է մտել 1898 թ. (և ոչ թե 1900 թ., ինչպես նշում են մի շարք ուսումնասիրողներ): Համառուսաստանյան առաջին հեղափոխության տարիներին նա արդեն համկուսակցական ճանաչված գործիչ էր, մարքսիստ-տեսաբան, Գ. Կ. Օրջոնիկիձեի արտահայտությամբ՝ տեսական մարքսիզմի «ծանր հրետանի» (Գ. Կ. Օրջոնիկիձե, ԸՆՏԻՐ ՀՈԴՎԱԾՆԵՐ ԵՎ ՃԱՌԵՐ, Երևան, 1950, էջ 98): Որպես Երևանի և Բորչալուի կուսակցական կազմակերպությունների պատգամավոր, նա բազմիցս ելույթներ է ունենում ՌՍԴ(բ)Կ IV և V համագումարներում, պաշտպանում լենինյան գիծը: 1907 թ. ՌՍԴ(բ)Կ V համագումարից հետո Շահումյանը Անդրկովկասի ամենախոշոր պրոլետարական կենտրոնի՝ Բաքվի հեղափոխական զանգվածների և բոլշե-

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ ԳԵՎՈՐԳ ԲԱԳՐԱՏԻ— ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, ՀՍՍՀ ԳԱ գիտական ինֆորմացիայի կենտրոնի դիրեկտոր:

վիկյան կազմակերպության սիրված ղեկավարներից էր: 1903 թ. Ժնևում անձամբ ծանոթանում է Վ. Ի. Լենինին, մշտական նամակագրություն հաստատում կուսակցության առաջնորդի հետ, որը բարձր է գնահատում Շահումյանի պրակտիկ և տեսական գործունեությունը: 1915 թ. հոկտեմբերին Բաքվում Շահումյանի ղեկավարությամբ տեղի է ունենում Կովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների խորհրդակցություն, որի բանաձևերում լենինյան դիրքերից լուսաբանվում են կուսակցության տակտիկան՝ պատերազմի, ազգային քաղաքականության, կազմակերպչական գործունեության հարցերում: 1917 թ. փետրվարյան հեղափոխությունից հետո, ազատվելով սարատովյան աքսորավայրից, Շահումյանը վերադառնում է Բաքու: Հունիսին նա ակտիվորեն մասնակցում է սովետների համառուսաստանյան առաջին համագումարի աշխատանքներին, որտեղ այլ ականավոր բոլշևիկների հետ միասին ընտրվում է Համառուսաստանյան կենտգործկոմի անդամ: Այս մասին Կոմինտերնի գործկոմի նախագահ Գ. Զինովևը 1922 թ. գրել է. «Սովետների առաջին համագումարի մեր ոչ մեծաքանակ ֆրակցիայում ընկ. Ստեփան Շահումյանին ղեկավար դեր էր պատկանում: Մենք բոլորս նրան գիտեինք որպես մեր կուսակցության ականավոր առաջնորդի և որպես մեր խոշորագույն ներկայացուցչի Կովկասում:

Ընկ. Ս. Շահումյանի անունն առհավետ ոսկյա տառերով է գրված Ռուսաստանյան և համաշխարհային պրոլետարական հեղափոխության պատմության մեջ» («Բակինսկի ռաբոչի», 1922 թ., № 211):

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում Շահումյանը, որպես կուսակցության կենտկոմի անդամ, գլխավորում է պայքարը Անդրկովկասում սովետական իշխանության հաղթանակի համար: Նա շրջում է Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի բազմաթիվ քաղաքներում ու գյուղերում, համախմբում հեղափոխական ու ազգային-ազատագրական ուժերին սովետական իշխանության շուրջը:

Վ. Ի. Լենինը և կուսակցության Կենտրոնական կոմիտեն, չնայած Սովետական Ռուսաստանի ծանր դրությանը, ամենայն ուշադրությամբ հետևում էին Կովկասի իրադարձություններին, օգնություն կազմակերպում այստեղ սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարը հաջողությամբ ծավալելու համար: Սովետական իշխանության լենինյան դեկրետները համախմբում էին երկրամասի բանվորներին, զինվորներին և գյուղացիներին Հոկտեմբերյան հեղափոխության ազատաբեր դրոշի ներքո, հույս ու հավատ էին ներշնչում, նպատակամղում նրանց հերոսական պայքարը:

1917 թ. դեկտեմբերի 16-ին ՌՍՖՍՀ ժողկոմխորհի նիստում Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկվում է Կովկասում ստեղծված դրության հարցը և որոշվում ՌՍԴ(բ)Կ կենտկոմի անդամ, Բաքվի սովետի նախագահ Ս. Գ. Շահումյանին նշանակել Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար՝ մինչև Կովկասում երկրային սովետական իշխանության կազմակերպումը: Այդ մասին Լենինի ստորագրությամբ մանդատ է տրվում Շահումյանին, նրա տրամադրության տակ է դրվում 500 հազար ռուբլի՝ հակահեղափոխության դեմ պայքարելու համար: Մանդատը և դրամը Պետրոգրադից Կովկաս է բերում Կամոն:

Դեկտեմբերի 29-ին «Թուրքահայաստանի մասին» լենինյան դեկրետն ընդունելու կապակցությամբ, որն իմպերիալիզմի լծի տակ տառապող արևմտահայերին տալիս էր ազգային ինքնորոշման լրիվ իրավունքը՝ ընդհուպ մինչև կատարյալ անկախություն, ժողկոմխորհը հանձնարարում է Կովկասի գործերի արտակարգ կոմիսար Շահումյանին դեկրետում նշված միջոցառումներն իրականացնելու գործում «Թուրքահայաստանի» բնակչությանը ցույց տալ ամեն տեսակի օգնություն:

Հայաստանի ինքնորոշման հիմնական սկզբունքները Լենինը Շահումյանի և մյուս հայ բոլշևիկների հետ հանգամանորեն քննարկել էր դեռևս Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ, և Շահումյանը, որպես կուսակցության Կենտկոմի անդամ և Բաքվի սովետի նախագահ, կենսագործում էր դրանք՝ ելնելով լենինյան ազգային քաղաքականության դեկրետներից ու կարգադրություններից:

Բաքվի պրոլետարիատը Շահումյանի, Ջափարիձեի, Ազիզբեկովի, Ֆիոլետովի, Կորգանովի և մյուս անձնվեր բոլշևիկների ղեկավարությամբ պատվով էր կատարում իր պարտքը Սովետական Ռուսաստանի նկատմամբ: 1918 թ. մարտին, երբ թուրքական հրոսակախմբերը շարժվում էին դեպի Անդրկովկասի խորքերը, իսկ մուսավաթական նացիոնալիստները ձգտում էին զավթել Բաքուն, Շահումյանի ղեկավարությամբ ստեղծվում է Բաքու քաղաքի և նրա շրջանների հեղափոխական պաշտպանության կոմիտե, որն այդ ժամանակ ռազմական ու քաղաքական բարձրագույն օրգան էր և միավորում էր Բաքվի ու նրա շրջանների սովետական կազմակերպությունները: Կոմիտեն դիմում է հեղափոխության հավատարիմ բոլոր ուժերին՝ համախմբվել իր շուրջը և պատրաստ լինել մինչև արյան վերջին կաթիլը կռվելու սովետի դրոշի ներքո:

1918 թ. ապրիլի 13-ին Շահումյանը Բաքվից ուղարկած ընդարձակ նամակում հայտնում էր ժողովրդական կոմիսարների խորհրդին, որ մարտի 30-ից ապրիլի մեկը Բաքվում կատաղի մարտեր էին տեղի ունենում հեղափոխական և հակահեղափոխական ուժերի միջև, որի ընթացքում բշնամին կատարելապես ջախջախվեց և սովետը վերջնականապես ամրապնդվեց: Շահումյանն առաջարկում է նավթային արդյունաբերության, բանկերի, ծովային տրանսպորտի ազգայնացման իրենց պլանները և անհրաժեշտ օգնություն խնդրում: Վ. Ի. Լենինն անմիջապես պատասխանում է Շահումյանի նամակին, մատնանշում Մոսկվայի հետ կապ պահպանելու ուղիները:

Լինելով ստեղծագործական մարքսիզմի ականավոր ներկայացուցիչներից, հիանալի ըմբռնելով սովետական իշխանության լենինյան քաղաքականությունը, իմաստնացած դժվարին պայքարի հարուստ փորձով, Շահումյանը կարողանում էր ճիշտ կողմնորոշվել ու հմտորեն կենսագործել բոլշևիզմի ստրատեգիայի և տակտիկայի սկզբունքները Կովկասի բարդ ու հակասական իրադրության պայմաններում, երբ երկրամասը նացիոնալիստական կուսակցությունների ու սպիտակգվարդիականների հակաժողովրդական գործողությունների հետևանքով կտրվել էր Սովետական Ռուսաստանից և անսահման դժվար էր դարձել իրականացնել կապը կենտրոնական իշխանությունների, Լենինի հետ:

Իր կուսակցական ու պետական գործունեության ընթացքում Շահումյանը միշտ խստորեն հաշվի էր առնում Կովկասի սոցիալ-տնտեսական, քաղաքական պայմանների առանձնահատկությունները, նրա ժողովուրդների ավանդույթները: 1918 թ. փետրվար-մարտին, Բրեստի հաշտության ծանր ժամանակաշրջանում, երբ կուսակցության որոշ գործիչներ, չհասկանալով սովետական իշխանությունը փրկելու նպատակով գերմանացիների հետ պայմանագիր կնքելու լենինյան գիծը, չպաշտպանեցին այն, Շահումյանը հետևողականորեն հանդես էր գալիս Լենինի բոլոր առաջարկությունների օգտին, պարզաբանում, որ Բրեստի չարաբաստիկ պայմանագիրը հարկադրաբար է պարտադրված Սովետական Ռուսաստանին, քանի որ մինչև ատամները զինված գերմանական զորքերին դիմադրություն ցույց տալու անհրաժեշտ ուժեր չկային: Միաժամանակ, ելնելով Անդրկովկասի պատմական առանձնահատկություններից, կոնկրետ պայմաններից, Շահումյանը, որպես կենտրոնական իշխանության պաշտոնական ներկայացուցիչ, հարց էր դնում Լենինի կառավարության առաջ. հակառակ Բրեստի պայմանագրի կետերի, Կարսը, Բաթումը և Արդահանը հանձնելու մասին ոչ մի հայտարարություն չանել և դիմել պաշտպանության: «Մենք մատնանշում էինք,— ասում էր Ս. Շահումյանը 1918 թ. հունիսի 7-ին,— որ Անդրկովկասն այնպիսի պայմանների մեջ է գտնըվում, որ ամբողջ բնակչությունը՝ առանց ազգության խտրության, կկռվի, որպեսզի պաշտպանի իրեն թուրքերից, որովհետև նրանք Անդրկովկասում ամբողջ ազգություններ կոչընչացնեին... Մեզ համար պարզ էր, որ կառավարությունը կարող է միայն ողջունել կովկասյան հերոսներին» (ԵԼԺ, հ. 5, էջ 84):

Շահումյանը ցույց էր տալիս, որ հակասովետական իշխանությունների, մուսավաթականների, մենշևիկների, դաշնակների մեղքով է, որ թուրքական զավթիչները մտան Անդրկովկաս և շարժվում են դեպի Բաքու: Այդ մենշևիկներն էին, որ բույլատրեցին մուսավաթիստներին՝ զինաթափ անելու ու գնդակահարելու ռուսական զորքերի էշելոնները, այդ մենշևիկ Ջխեիձեն էր, որ պաշտպանելով իր համախոհ Օնիաշվիլու հայտարարությունը Անդրկովկասյան սեյմում՝ թե ռուսական օրիենտացիան ռեակցիոն է և պետք է ուրիշ օրիենտացիա փնտրել, ասաց, թե «լավ է ընկնել Թուրքիայի, քան բոլշևիկների գիրկը» (նույն տեղը, էջ 85):

Շահումյանը բազմիցս նշում է, որ Անդրկովկասում առկա են ռեալ ուժեր երկրամասը թուրքական զավթիչներից պաշտպանելու համար: Նա այն համոզմանն էր, որ, ճանաչելով Սովետական Ռուսաստանի իշխանությունը, Լենինի կառավարությունը և հենվելով հեղափոխական ուժերի, պրոլետարական Բաքվի վրա, հնարավոր է ոչ միայն ջախջախել ու դուրս շպրտել թուրքական զորքերին նրանց գրաված տերիտորիայից, այլև ազատագրել Հայաստանի ու Վրաստանի՝ նրանց կողմից զավթած վայրերը, այդ թվում նաև Արևմտյան Հայաստանը:

Այս նպատակին էին ուղղված Շահումյանի բոլոր ջանքերը:

1918 թ. առաջին կեսին Բաքուն դարձել էր սովետական իշխանության բազան ամբողջ Անդրկովկասում:

Ապրիլի 25-ին բոլշևիկների ղեկավարությամբ ստեղծվում է Բաքվի ժողովրդական կոմիսարների խորհուրդը, որի նախագահ և արտաքին գործերի կոմիսար է դառնում Շահումյանը: Ներքին գործերի ժողովրդական կոմիսարն էր Ա. Ջափարիձեն, ժողովրդական տնտեսության գործերինը՝ Ի. Ֆիոլետովը, ռազմական և ծովային գործերինը՝ Գ. Կորգանովը, քաղաքային տնտեսության գործերինը՝ Ն. Նարիմանովը, լուսավորության գործերինը՝ Ն. Կոլեսնիկովան, արդարադատության գործերինը՝ Ա. Կարինյանը: Ապա նահանգային կոմիսար հաստատվեց Մ. Ազիզբեկովը, աշխատանքի ժողովրդական կոմիսար՝ Յա. Զևինը, հողագործության կոմիսար՝ ծախ էսէռ Մ. Վեզիրովը: Սրանք բոլորն էլ հեղափոխության բովում կոփված, ժողովրդի գործին նվիրված ինտերնացիոնալիստներ էին: «Շահումյանը, Ջափարիձեն, Ազիզբեկովը, Ֆիոլետովը ընկերներ-եղբայրներ են եղել»,— գրել է Ա. Կարինյանը:

Բաքվի ժողկոմխորհի դեկլարացիայում, որն ստորագրել էին Շահումյանն ու մյուս կոմիսար-

ները, նշվում էր, որ այն «ամենասերտ կերպով կապված կլինի Համառուսաստանյան կենտրոնական իշխանության հետ, և հարմարվելով տեղական պայմաններին՝ կենսագործելու է Ռուսաստանի բանվորագյուղացիական կառավարության՝ ժողովրդական կոմիսարների խորհրդի բոլոր դեկրետներն ու կարգադրությունները» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 4, էջ 228): Դեկլարացիայում ասվում էր, որ մարտի օրերին տարած հաղթությունից հետո Բաքվի սովետը լիիշխան տեր է դարձել Բաքու քաղաքում ու շրջապատում և պայքարում է ամբողջ Անդրկովկասում ու Դաղստանի մարզում սովետական իշխանություն հաստատելու համար:

Շահումյանը սիստեմատիկաբար հաղորդում էր Վ. Ի. Լենինին, թե ինչպես են իրենք կենսագործում սովետական իշխանության ներքական խնդիրները՝ սոցիալիստական շինարարության պլանը, պատմում էր այդ գործում իրենց դժվարությունների մասին։ Վ. Ի. Լենինից, ՌՍՖՍՀ ժողկոմխորհից ստացած նամակներում, գրություններում, որոնք հասցեագրվում էին Շահումյանին, անհրաժեշտ ցուցումներ, դիրեկտիվներ էին տրվում քաղաքական, ռազմական, տնտեսական տարբեր հարցերի վերաբերյալ:

Լիովին վստահելով Շահումյանին, որպես Բաքվի կոմունայի ղեկավարի, Վ. Ի. Լենինը մեծ ուշադրությամբ ու հոգատարությամբ հետևում էր նրա գործունեությանը, Բաքվի պրոլետարիատի հերոսական պայքարին: Շահումյանի ղեկավարությամբ բոլշևիկների քաղաքականությունն արժանանում է Լենինի հավանությանը, նա խորհուրդներ է տալիս սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Բաքվում ապահովելու համար:

1918 թ. մայիսի 14-ին Շահումյանին ուղղած հեռագրում Լենինը նշում է. «Թանկագին ընկեր Շահումյա՛ն, շատ շնորհակալ եմ նամակի համար: Մենք հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից: Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ.— և մենք կհաղթենք:

Դժվարություններն անսահման են: Առայժմ մեզ փրկում են միայն հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը իմպերիալիստների միջև: Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները, առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 50, էջ 84—85): Մինչև այժմ այս նամակի ամսաթիվը նշվում էր փետրվարի 14, պետք է լինի մայիսի 14): 1918 թ. հունիսի 28-ին Բաքվի բոլշևիկյան կազմակերպության կոնֆերանսում՝ ՌՍՖՍՀ-ում Բաքվի ժողկոմխորհի ներկայացուցիչ Ս. Մ. Տեր-Գաբրիելյանը, զեկուցելով Սովետական Ռուսաստան կատարած իր ուղևորության և Վ. Ի. Լենինի հետ ունեցած հանդիպումների մասին, ասում է. «Ընկ. Լենինը քանիցս արտահայտեց իր հիացմունքը Բաքվի խորհրդի քաղաքականության և իր թանկագին ընկ. Շահումյանի նկատմամբ: Նա հայտնեց իր մշտական պատրաստակամությունը՝ բարոյապես և նյութապես աջակցելու Բաքվի պրոլետարիատին: «Ամեն ինչ Բաքվի համար»՝ այս խոսքերը ես լսեցի ոչ միայն առաջնորդների շուրթերից, այլև առանձին գործարաններում նաև բանվորներից, որոնք երջանկություն էին համարում ողջունել Բաքվի աներեր պրոլետարիատին» (Սահակ Տեր-Գաբրիելյան, ՀՈԴՎԱԾՆԵՐ, ՃԱՌԵՐ, ՓԱՍՏԱԹՂԹԵՐ, Երևան, 1979, էջ 41): Բաքվում և նրա շրջաններում սովետական իշխանության գոյության տասը ամիսների և Կոմունայի գոյության մոտ 97 օրվա ընթացքում Շահումյանը մշտապես գտնվում էր հերոսական իրադարձությունների բուն կենտրոնում: Նա ամեն օր ելույթներ էր ունենում, զեկուցումներով հանդես գալիս բանվորական, գյուղացիական, զինվորական մասսաների առջև, հաճախակի լինում նավթագործների մոտ, զինվորական ակումբներում, ռազմաճակատում, սովետի նիստերում, տպարանում, որտեղ տպագրվում էին ժողկոմխորհի դեկրետներն ու կարգադրությունները, Կոմունայի թերթերը: Շահումյանի հոդվածները, բոլշևիկյան ճշմարիտ խոսքը, կոչերը՝ ուղղված բոլոր ազգերի բանվորներին, զինվորներին, գյուղացիներին, աշխատավոր լայն մասսաներին, ոգեշնչում էին Անդրկովկասի հեղափոխական ուժերին:

Իրականացնելով իրենց պանթուրքական պլանները, թուրքական զավթիչները ոչ մի բանի առջև կանգ չէին առնում Բաքուն զավթելու և դեպի Միջին Ասիա ու Դաղստան շարժվելու համար: Սակայն իրենց ճանապարհին նրանք հանդիպում են Անդրկովկասի հայրենասիրական ուժերի հերոսական դիմադրությանը: 1918 թ. մայիսի վերջին թուրքական բարբարոսներին վճռական հարվածներ են հասցվում Սարդարապատի, Բաշ-Ապարանի և Ղարաքիլիսայի մոտ: Թուրքական ուժերի դեմ հերոսական մարտեր էին մղում գեներալ Անդրանիկի զորախմբերը՝ Նախիջևանում, Զանգեզուրում և Արցախում: Այդ մասին գիտեր Շահումյանը և անմիջապես արձագանքում է Անդրանիկի Նախիջևանից Բաքու իր հասցեով ստացած հեռագրին. «Ջուլֆա, ժողովրդական առաջնորդ Անդրանիկին: Ձեր հեռագիրը ստացա: Լրիվ տեքստը հաղորդեցի Մոսկվա՝ Կենտրոնական կառավարությանը: Իմ կողմից հանձին ձեզ ողջունում եմ իսկական ժողովրդական հերոսին...» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 5, էջ 199):

Բաքվի սովետական իշխանությունն այդ ժամանակ դարձել էր Թուրքիայի դեմ պաշտպանության միակ ուժը: Նրա շուրջն էին համախմբվել ժողովրդական լայն մասսաները, այդ թվում նաև հայկական զորամասերը: Շահումյանն ամեն ինչ անում էր Բաքվի կոմունան ամրապնդելու, այն բազմաթիվ թշնամիներից պաշտպանելու համար:



Այցելելով ռազմաճակատ և տեղում պարզելով իրադրությունը՝ Շահումյանը 1918 թ. հուլիսի 16-ին Բաքվի սովետի և շրջանային սովետների, նավային կոմիտեների և Կովկասյան կարմիր բանակի ռազմահեղափոխական կոմիտեի արտակարգ համատեղ նիստում «Ռուսաստանի և Անդրկովկասի քաղաքական և ռազմական դրության մասին» զեկուցման մեջ ասում է. *«Ուժերի հարաբերակցությունը պարզելուց հետո ես եկա այն եզրակացության, որ մեր միջոցները դեռ հեռու են սպառված լինելուց... Եթե մենք, ինչպես մինչև այժմ, պահպանենք միասնական ճակատն անկախությունը պաշտպանելու հարցում և դիմենք պրոլետարիատին՝ կոչ անելով զենք վերցնել մեր անկախությունը պաշտպանելու համար, ապա Բաքվի պրոլետարիատն ուժ կգտնի իր մեջ, որպեսզի իր միջից մի քանի հազար մարդ առանձնացնի զորքի համար, որը կշարժվի օգնելու ռազմաճակատում գտնվող մեր ընկերներին։ Այս համոզմունքն ինձնից ոչ ոք չի կարող խլել» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 5, էջ 189)։*

Ավարտելով զեկուցումը անգլիացիներին օգնության դիմելու առաջարկությունների վճռական մերժումով, Շահումյանը հայտարարում է. *«Մեր մեջ բավականին հեղափոխական զգացում ու գիտակցություն կգտնվի, որպեսզի ասենք. ո՛չ, մենք չենք կարող հանձնվել օտարերկրյա իմպերիալիստների ձեռքը, մենք կպայքարենք մեր անկախության համար ու կպաշտպանենք այն մեր ուժերով»* (Նույն տեղը, էջ 195):

Սակայն 1918 թ. կեսերին Անդրկովկասի և Սովետական հանրապետության արտաքին ու ներքին խիստ ծանր ու բարդ իրադրությունը հնարավորություն չտվեց Բաքվի Կոմունային հաղթահարել միջազգային իմպերիալիզմի ու ներքին հակահեղափոխության սաստկացող հարձակումները: Ուժերն անհավասար էին, իսկ նորաստեղծ Սովետական Ռուսաստանը, չնայած ամեն ինչ անում էր բաքվեցիներին օգնելու համար, ինքն էլ էր գտնվում իմպերիալիստական ու սպիտակգվարդիական ուժերի կրակե օղակի մեջ, անջատված էր Անդրկովկասից հակահեղափոխական բանդաների գրաված Հյուսիսային Կովկասի ջրբաժան գոտիով: Բաքվի սովետի նախագահ Ա. Ջափարիձեն ասում էր, թե պետք է հատուկ հաշվի առնվի, որ «Կովկասի վրա է ուղղված բոլոր երկրների՝ և՛ ֆրանսիական, և՛ անգլիական, և՛ գերմանական բուրժուազիայի հայացքը, նրանք բոլորն էլ տենչում են իրենց ձեռքն առնել Կովկասի հարստությունները» (Պ. Ա. Ջափարիձե, ԸՆՏԻՐ ՀՈԴՎԱԾՆԵՐ, ՃԱՌԵՐ ԵՎ ՆԱՄԱԿՆԵՐ. 1905—1918 թթ., Երևան, 1970, էջ 306):

Այս պայմաններում էլ Բաքվի ժողկոմխորհն անսասան էր և, օգտվելով պրոլետարիատի լիակատար վստահությունից, ամեն ինչ անում էր Բաքվում սովետական իշխանությունն ամրապնդելու համար:

Հունիսի 16-ին Բաքվի սովետը, լսելով Շահումյանի զեկուցումը Անդրկովկասի դրության մասին գերմանաթուրքական գիշատիչների ագրեսիվ գործողությունների կապակցությամբ, լիովին հավանություն է տալիս ժողկոմխորհի հեղափոխական ծրագրին և պրոլետարիատի ու սովետական կարմիր բանակի անունից հայտարարում, որ մինչև վերջ կպայքարի հարձակվող գերմանաթուրքական ավազակախմբերի դեմ, կպաշտպանի իրենց ազատությունը և անքակտելի կապը Ռուսաստանի սովետական մեծ հանրապետության հետ:

1918 թ. հունիսի 29-ին Շահումյանը Բաքվից հեռագրում է Վ. Ի. Լենինին. «Կովկասում ընդհանուր դրությունը գնալով բարդանում է, բայց մենք մեզ առույգ ու վստահ ենք զգում» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 5, էջ 154):

Օգտվելով ռազմական ուժերի գերակշռությունից և անդրկովկասյան նացիոնալիստների դավաճանական քաղաքականությունից, իրականացնելով իրենց նվաճողական պլանները՝ մի կողմից գերմանաթուրքական ավազակախմբերը, իսկ մյուս կողմից՝ անգլիական զավթիչները շարժվում են դեպի Բաքու: «... էնվերն ու թուրքական կառավարությունը,— գրում էր գերմանական բանակի գլխավոր շտաբի պետ գեներալ Լյուդենդորֆը,— ավելի շատ մտածում էին Կովկասի նկատմամբ ունեցած իրենց պանիսլամական նպատակների, քան Անգլիայի դեմ մղվող պատերազմի մասին:

Թուրքերից Բաքուն պաշտպանելու քողի տակ նրա նավթային հարստություններին էին ուզում տիրանալ բրիտանական զավթիչները: «Բաքվի նշանակությունը հսկայական էր, և նրան տիրանալու ամեն մի ռիսկ արդարացվում էր անտարակույս»,— գրել է անգլիական գեներալ Դենստերվիլը:

Օգտվելով այս բարդ իրավիճակից, աջ էսէռները, դաշնակցականները և մենշևիկները Բաքվի սովետի 1918 թ. հուլիսի 25-ի արտակարգ նիստում 23 ձայնի գերակշռությամբ (259 ընդդեմ 236-ի) բանաձև են անցկացնում անգլիական զորքերին Բաքու հրավիրելու և կոալիցիոն կառավարություն կազմելու մասին: Այդ որոշումը որակելով որպես դավաճանություն, Շահումյանը հայտարարում է, որ ինքը չի կարող իր վրա որևէ պատասխանատվություն վերցնել հակահեղափոխության այդ դավաճանական քայլի համար:

Համառուսաստանյան Կենտգործկոմի, Մոսկվայի սովետի, Մոսկվայի ֆաբրիկագործարանային կոմիտեների և արհեստակցական միությունների 1918 թ. հուլիսի 29-ի միացյալ նիստում արտասանած ճառում Վ. Ի. Լենինը, լիովին հավանություն տալով Շահումյանի գլխավորած Բաքվի բոլշևիկների այս քաղաքականությանը, նշում է. «Անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կնքելուց վճռականորեն հրաժարվելը Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է...», ոչ թե խոսքով, այլ գործով սոցիա-

լիտներին վայել միակ քայլը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 37, էջ 8):

Սակայն այս բոլորովին չէր նշանակում, որ Շահումյանի ղեկավարած կառավարությունը որոշել էր իշխանությունը հանձնել առանց պայքարի:

Հուլիսի 26-ին Բաքվի սովետի գործկոմի ընդլայնված նիստը, իսկ մեկ օր անց՝ բոլշևիկների Բաքվի քաղաքային կոնֆերանսը որոշում են իշխանությունն առանց պայքարի չհանձնել, ընդհանուր զորահավաք հայտարարել և ժողկոմխորհի ղեկավարությամբ կազմակերպել Բաքվի պաշտպանությունը: Շահումյանը կոչ է անում հեղափոխական ուժերին՝ հաղթել կամ մեռնել պատվով: Բաքվի բանվորներին ուղղած կոչում Շահումյանը նշում է, որ հրաժարական տալով իրենք որոշել էին «փրկել Ռուսաստանի սովետական իշխանությանը հավատարիմ հեղափոխական զորքերը, որպեսզի, սպասելով Աստրախանից եկող զորքերին, նրանց հետ միասին կռիվ հայտարարենք երկու ճակատում՝ թուրքական ու անգլիական իմպերիալիզմին և պաշտպանենք Բաքուն հեղափոխական Սովետական Ռուսաստանի համար» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 5, էջ 230): 1918 թ. օգոստոսի 17-ին Բաքվի ռազմաքաղաքական դրության մասին Աստրախանից Վ. Ի. Լենինին ուղարկված հեռագրում նշվում էր. «Սովետի արտակարգ ժողովում անգլիացիներին հրավիրելու մասին հայտնի բանաձևը ընդունելուց հետո ժողկոմխորհը թեև ձևականորեն հրաժարական էր տվել, բայց փաստորեն շարունակում էր իր աշխատանքը»[1]:

Այդ ահեղ օրերին Շահումյանը և Բաքվի մյուս կոմիսարները մինչև վերջ մնացին իրենց մարտական հեղափոխական դիրքերում: Նրանք շարունակում էին աշխատել սովետում, անցկացնում էին կուսակցական խորհրդակցություններ, կոնֆերանսներ, լույս էին ընծայում թռուցիկներ, թերթեր: Հեղափոխական զինված ուժերը մարտական դիրք էին գրավել Բաքվի Պետրովսկի հրապարակում, ծովափին ու նավերի վրա:

1918 թ. օգոստոսի 12-ին բոլշևիկների Բաքվի կազմակերպության կոնֆերանսը որոշում է սովետական իշխանության օրգանները ժամանակավորապես էվակուացնել Աստրախան: Թողնելով Բաքուն, Ս. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Կենտրոնական ժողկոմխորհի կողմից Բաքվի շրջանի ռազմական կոմիսար Գ. Պետրովը և Կասպիական ռազմական նավատորմիկի կոմիսար Վ. Պոլուխինը դեկլարացիա են ստորագրում սովետական զորքերի էվակուացիայի մասին, որում նշվում էր, որ հեղափոխական ռազմաճակատ Բաքվում այլևս չկա, այլ կա իմպերիալիստական ռազմաճակատ, պայքարում են երկու ուժեր, որոնք հավասարապես թշնամի են Ռուսաստանի բանվորագյուղացիական սովետական իշխանությանը: «Այդ պահից,— ասվում էր դեկլարացիայում,— Ռուսաստանի սովետական իշխանության քաղաքական ու զինվորական ներկայացուցիչները և Ռուսաստանից ուղարկված ռազմական ուժերը չեն կարող մնալ Բաքվում և անգլիական իմպերիալիստների աջակիցները լինել, աջ էսէռների, մենշևիկների և դաշնակցականների ազդեցությամբ կատարված դավաճանության մասնակիցները լինել...

Ցավ ի սիրտ, եզովքը շրթունքներին, նրանք, որ այստեղ էին եկել Բաքվի բանվորների հետ միասին կռվելու և մեռնելու սովետական իշխանության համար, հարկադրված են հեռանալ Բաքվից...

Նրանք հույս ունեն, որ բանվորագյուղացիական Ռուսաստանը դարձյալ կգա Բաքու, և Բաքվի պրոլետարիատը կրկին կկապվի հարազատ հեղափոխական Ռուսաստանի հետ և նորից կկանգնի Սովետական Սոցիալիստական Ռուսաստանի դրոշի ներքո» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 5, էջ 245—246):

Դեկլարացիան հեռագրով հաղորդվում է Մոսկվա, Վ. Ի. Լենինին և Յա. Մ. Սվերդլովին:

Օգոստոսի 14-ին Բաքվի կոմիսարները և կարմիր բանակի զորամասերը Շահումյանի գլխավորությամբ նավով մեկնում են Աստրախան, սակայն երկու օր հետո «Ցենտրոկասպիի դիկտատուրայի» ռազմանավերը Ժիլոյ կղզու մոտ, հրետանային կրակի սպառնալիքի տակ ստիպում են նրանց վերադառնալ Բաքու: Շահումյանը, Ջափարիձեն, Ֆիոլետովը, Ազիզբեկովը և Բաքվի մյուս կոմիսարները ձերբակալվում են ու բանտարկվում: Թուրքական զավթիչները Բաքու են մտնում «խփել բոլշևիկներին, խփել հայերին» կոչերով: Նրանց հաջորդում են անգլիական օկուպանտները, որոնք չարախնդում էին, որ իրենց ձեռքն էին ընկել «Շահումյանը՝ հռչակավոր հերոսներից մեկը, որին վաղուց ի վեր «Կովկասյան Լենին» անունն էին տվել», և նրա մերձավոր բարեկամները:

Անգլիական իմպերիալիստները և նրանց էսէռական գործակալները 1918 թ. սեպտեմբերի 20-ին Կրասնովոդսկից 207 վերստ հեռավորության վրա, անդրկասպյան ավազուտներում, Ախչա-Կույմա և Պերեվալ կայարանների միջև գազանաբար գնդակահարում են Բաքվի 26 կոմիսարներին՝ կոմունիստական կուսակցության, բանվոր դասակարգի ազատության գործին մինչև վերջ նվիրված հերոս մարտիկներ՝ Ստեփան Շահումյանին, Ալյոշա Ջափարիձեին, Մեշադի Ազիզբեկովին, Իվան Ֆիոլետովին, Գրիգորի Կորգանովին, Միր Հասան Վեզիրովին, Պավել Զևինին, Գրիգորի Պետրովին, Վլադիմիր Պոլուխինին, Արսեն Ամիրյանին, Սուրեն Հովսեփյանին, Իվան Մալիգինին, Բաղդասար Ավագյանին, Մեր Բասանին, Մարկ Կոգանովին, Ֆյոդոր Սոլնցևին, Արամ Կոստանյանին, Անատոլի Բոգդանովին, Սոլոմոն Բոգդանովին, Արմենակ Բորյանին, Էժեն Բերգին, Իվան Գաբիշևին, Թադևոս Ամիրյանին, Իվան Նիկոլաշվիլուն, Իրակլի Մետաքսային, Իսայի Միշնեին:

Ստեփան Շահումյանի և նրա մարտական ընկերների արտասանած վերջին խոսքերն էին. «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար: Կեցցե՛ կոմունիզմը»:

Այն գործը, որի համար պայքարեցին ու զոհվեցին Բաքվի 26 կոմիսարները և մյուս աննկուն հերոսները, հաղթանակով պսակվեց: Ազատարար կարմիր բանակի եղբայրական գնությամբ Բաքվում և ամբողջ Անդրկովկասում հաստատվեցին սովետական կարգեր: 1920 թ. սեպտեմբերին՝ Արևելքի ժողովուրդների առաջին համագումարի օրերին, Շահումյանի և մյուս կոմիսարների աճյունները Աշխաբադից, որտեղ նրանք թաղվել էին մինչև այդ, տեղափոխվեցին ու հանդիսավոր կերպով հողին հանձնվեցին Բաքվի Ազատության հրապարակում՝ քաղաքի կենտրոնում, որտեղ հաճախ ելույթ էին ունեցել նրանք: Ինչպես համագումարում, այնպես էլ սգո միտինգում ընդգծվում է, որ Բաքվի կոմունարները Ս. Շահումյանի ղեկավարությամբ մինչև վերջին պահը քաջարի կերպով կանգնած են մնացել իրենց հեղափոխական դիրքերում: Կոմինտերնի գործկոմի նախագահ Գ. Զինովևը համագումարում ասում է. «Մենք հիշում ենք մեր լավագույն բարեկամներին և եղբայրներին՝ Շահումյանին, Ջափարիձեին, որոնց հետ մենք շատերս երկար տարիներ կապված ենք եղել ընդհանուր հեղափոխական պայքարով ու եղբայրական բարեկամությամբ, և որոնք ինչպես դուք գիտեք խլվել են մեր շարքերից բանվոր դասակարգի դահիճների և դավաճանների բռնի ձեռքով: Ձեր այդպիսի մարտիկների, ինչպիսիք են Շահումյանը և Ջափարիձեն, անունները Պետերբուրգի, Մոսկվայի և ողջ Ռուսաստանի բոլոր բանվորների շրթներին է» (**Первый съезд народов Востока. Стенографический отчет. Изд. Коминтерна, П., 1920, стр. 10**):

---

1 *ՍՍՀՄ ՀՀԿՊԱ, ֆ. 130, ց. 2, փ. 570, թ. 57:*

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

**Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ**

ՄՈՍԿՎԱ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ Կրեմլում զբոսնելու ժամանակ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Ռեյգանին հարցրեցին. «Դուք առաջվա նման Սովետական Միությունը համարում եք «չարիքի կայսրություն»»: Դրան պրեզիդենտը, առանց երկար մտածելու, պատասխանեց. «Ո՛չ»: Դա, թերևս, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Ռեյգանի 1988 թվականի մայիս-հունիսին Մոսկվայում կայացած հանդիպման ամենաադրամատիկական էպիզոդներից մեկն էր:

Այդ էպիզոդը հիշեցրեց «սառը պատերազմի» ոչ վաղ անցյալի մռայլ ժամանակները, երբ պաշտոնական Վաշինգտոնի ներկայացուցչի գործնականորեն ոչ մի ելույթ տեղի չէր ունենում առանց մեր երկրի, սոցիալիզմի, կոմունիզմի գաղափարախոսության դեմ որևէ հարձակման: Հակասովետական այդ ճարտասանության գագաթնակետը եղան «չարիքի կայսրության» մասին պրեզիդենտի խոսքերը, որ նա ասել էր իր հրապարակային ելույթներից մեկում: Այդ կապակցությամբ ես հիշեցի, թե ինչպես պատահական զուգադիպությամբ Ռեյգանի այդ չարաբարո ելույթի հաջորդ օրը սովետական պատվիրակությունը առիթ էր ունեցել հանդիպել ամերիկացի գործընկերների հետ Ժնևի երկկողմ բանակցություններում: Մեր այն հարցին, թե ինչպես հասկանալ պրեզիդենտի այդքան, մեղմ ասած, ոչ բարեկամական հայտարարությունը, մեր ամերիկացի զրուցակիցները շփոթված բացատրեցին պրեզիդենտի «հուզականությամբ», իսկ մի քանիսը նույնիսկ գտնում էին, որ նա պարզապես սխալվել է:

Ո՛չ, դժբախտաբար, դա սխալմունք չէր: Պրեզիդենտի կողմից մեր երկրին կպցրված պիտակը սովետական հասարակության իբր անմարդասեր, ոչ դեմոկրատական, ագրեսիվ բնույթի նկատմամբ ԱՄՆ-ի ազդեցիկ, կառավարող շրջանների ունեցած խոր համոզմունքի արտահայտությունն էր, կոմունիզմի նկատմամբ նրանց տածած ատելության արտահայտությունը:

Ես առիթ եմ ունեցել Ռեյգանի ելույթին առաջին անգամ ներկա գտնվել 1982 թվականին Նյու Յորքում, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի՝ զինաթափմանը նվիրված հատուկ նստաշրջանում: Թեպետ նա հիանալի հռետոր է, բայց նրան լսելը տհաճ էր, ցավալի: Նրա ճառի նշանակալի մասը նվիրված էր Սովետական Միության քաղաքականության խիստ քննադատությանը, նրա դեմ կոպիտ հարձակումներին: Չնայած այն բանին, որ պրեզիդենտը ելույթ էր ունենում զինաթափման ասամբլեայում, բոլոր նրանց մոտ, ովքեր լսում էին նրան, նվազագույն հույս անգամ չմնաց, որ հնարավոր է զինաթափման թեմայով կոնստրուկտիվ երկխոսություն ունենալ նրա վարչակազմի ներկայացուցիչների հետ: Այն տարիներին նույն ոգով հայտարարություններ էին անում նաև Վաշինգտոնի մյուս բարձրաստիճան պաշտոնյաները:

Մեծ դժբախտություն չէր լինի, եթե գործը սահմանափակվեր լոկ հռետորությամբ: ԱՄՆ-ի կառավարությունը ձգտում էր ռազմական գերազանցության հասնել Սովետական Միության նկատմամբ, անզուսպ կերպով ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը: Այդ վտանգավոր քաղաքականությունը արտացոլում էր

---

*ԻՍՐԱՅԵԼՅԱՆ ՎԻԿՏՈՐ ԼԵՎՈՆԻ— ՍՍՀՄ արտակարգ և լիազոր դեսպան, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:*



«ուղղակի հակամարտության» ռազմական դոկտրինան, որը ելնում էր, մասնավորապես, այն բանից, որ «ամերիկյան միջուկային ուժերը պետք է հաղթող դուրս գան և ի վիճակի լինեն ստիպելու Սովետական Միությանն ամենաարագ կերպով դադարեցնելու ռազմական գործողությունները՝ ԱՄՆ-ի համար բարենպաստ պայմաններով»:

Սպառազինությունների մրցավազքը ուժգին խթանելուն զուգընթաց Ռեյգանի վարչակազմը կանգնեց սովետա-ամերիկյան հարաբերությունները սահմանափակելու ուղու վրա. ընդհատվեցին երկկողմ շատ կոնտակտներ, մի շարք համաձայնագրեր չէին կատարվում Ամերիկայի կողմից, իսկ ռազմական լիցքաթափման հարցերի վերաբերյալ ՍՍՀՄ-ի հետ վարած կարևորագույն բանակցությունները շարունակելուց Վաշինգտոնը միակողմանի կերպով հրաժարվեց:

Ամերիկացի հայտնի լրագրող Ս. Թալբոթը, որը մասնագիտանում է սովետա-ամերիկյան հարաբերությունների հարցերում, չարաշահելով ռազմական բնագավառում ԱՄՆ-ի «հետ մնալու» վերաբերյալ առասպելը, բացահայտ խոստովանում էր. «Նկատի ունենալով, որ Միացյալ Նահանգներն այսօր հետ են մնացել և քանի որ դրա մեղքը մասամբ ընկնում է սպառազինությունների սահմանափակման մասին տեղի ունեցող բանակցությունների վրա, լավագույն կուրսն էր՝ դադարեցնել երկկողմ բանակցությունները և կենտրոնանալ ամերիկյան միակողմ վերազինման վրա»: Մի անգամ սպառազինությունների ու զինաթափման վերահսկողության ամերիկյան գործակալության դիրեկտոր Յու. Ռոստոուի հետ Ռեյգանը իշխանության գլուխ անցնելուց հետո կայացած զրույցի ժամանակ ես հարցրեցի նրան. «Ինչո՞ւ դուք՝ ամերիկացիներդ, այդքան վճռականորեն առարկում եք մեզ հետ բանակցություններ վարելու դեմ»: «Իսկ դրանք մեր ինչի՞ն են պետք»,— հարցին հարցով պատասխանեց նա:

Ռեյգանի վարչակազմի առճակատման քաղաքականության հետևանքով սովետա-ամերիկյան հարաբերությունները 80-ական թվականների կեսերին մտել էին փակուղի: Իսկ ի՞նչ տվեց այդ քաղաքականությունը Վաշինգտոնին, մնացած աշխարհին: ԱՄՆ-ին չհաջողվեց Սովետական Միության հետ եղած ռազմական հաշվեկշիռը փոխել իր օգտին, նա չկարողացավ նաև ստեղծել այնպիսի հզորություն, որն ապահովեր նրա ազգային անվտանգությունը միայն ռազմական միջոցների օգնությամբ: Միևնույն ժամանակ, իրենց չվերադարձնելով ռազմական գերզանցությունը Սովետական Միության նկատմամբ, Միացյալ Նահանգները ռազմական կարիքների համար ծախսեցին երկու և կես տրիլիոն դոլար և աշխարհում խոշորագույն վարկատուից դարձան խոշորագույն պարտապանը: Ուժային ճնշման մեթոդը, բացահայտ առճակատումը Սովետական Միության հետ Վաշինգտոնին ցանկալի արդյունքներ չտվեցին: 80-ական թվականների կեսերին այդ բանը ակնհայտ դարձավ: Սպառազինությունների մրցավազքի սաստկացման նոր փուլը մեր մոլորակը դարձրեց էլ ավելի փխրուն, բոլոր և ամեն մի պետության անվտանգությունն է՛լ ավելի խոցելի:

80-ական թվականների «սառը պատերազմը» շոշափեց միջազգային հարաբերությունների բոլոր ոլորտները՝ քաղաքականությունն ու առևտուրը, գիտական ու մշակութային կապերը, նույնիսկ սպորտը: Հիշենք. 1980 թվականին ԱՄՆ-ը հրաժարվեց մասնակցել Մոսկվայի օլիմպիական խաղերին, իսկ 1984 թվականին Սովետական Միությունը իր սպորտսմեններին չուղարկեց Լոս Անժելես: Լարվածության, անվստահության ու թշնամության գեներատորը սկսեց գործել լրիվ հզորությամբ: Յուրաքանչյուր նոր օր մարդկությունը դիմավորում էր իր ճակատագրի համար տագնապով:

Դրա հետ մեկտեղ անարդարացի կլիներ այդ տարիներին առաջացած միջազգային լարվածության միակ աղբյուրը համարել միայն Վաշինգտոնը: Դոգմատիզմը, սուբյեկտիվիստական մոտեցումը իրադարձությունների գնահատման գործում, աշխարհում տեղի ունեցող արմատական փոփոխություններից հետ մնալը, դեմոկրատական մեթոդների ու եղած հնարավորությունների անբավարար օգտագործումը՝ այս ամենը որոշակի կնիք դրեց սովետական արտաքին քաղաքականության վրա, և, բնականաբար, ազդեց միջազգային կյանքի զարգացման վրա:

Փոխանակ ձգտելու, որ Սովետական Միության անվտանգությունն ապահովվի քաղաքական միջոցներով, շահերի փոխադարձ հաշվառման վրա հիմնված պայմանավորվածությունների միջոցով, գլխավոր շեշտը դրվում էր ռազմական պոտենցիալի ուժեղացման վրա: Դրա հետևանքով Սովետական Միությունը ներքաշվում էր սպառազինությունների մրցավազքի մեջ, ինչը կործանարար կերպով էր անդրադառնում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման վրա: Կամ վերցնենք մեկ ուրիշ

հարց՝ սպառազինությունների սահմանափակման, զինաթափման հարցը: Այդ հարցի վերաբերյալ սիստեմատիկաբար հանդես գալով նոր, կարևոր նախաձեռնություններով, սովետական պատվիրակությունները հիմնական դրույթի՝ զինաթափման պրոցեսի նկատմամբ վերահսկողության հարցում գրավել էին այնքան ոչ ռեալիստական դիրք, որ հենց սկզբից էլ դժվարացնում, իսկ որոշ դեպքերում էլ անհնարին էին դարձնում համաձայնության հասնելու գործը: Լավագույն կիրառման արժանի համառությամբ մենք՝ բանակցողներս, հրահանգներին համապատասխան պաշտպանում էինք այնպիսի մոտեցում, որը բացարձակապես անընդունելի էր բանակցությունների մյուս մասնակիցների համար, այսինքն, որ ապագա համաձայնության յուրաքանչյուր մասնակից ի՛նքը վերահսկեր իրեն:

Լինում էր և այսպես: Հաշվի չառնելով պարտնյորի օրինական շահերը, սովետական կողմը, ինչպես ասում են, հենց շեմքից մերժում էր նրա առաջարկությունները: Բավական է, օրինակ, հիշել միջին հեռահարության հրթիռների վերաբերյալ Սովետական Միության գրաված դիրքը համապատասխան սովետա-ամերիկյան բանակցություններում: Ըստ երևույթին, 70-ական թվականների վերջին— 80-ական թվականների սկզբին ստեղծված իրավիճակի իրատեսական գնահատականը և պրագմատիկ մոտեցումը բանակցություններին կապահովեին վերջնական նպատակին՝ «կրկնակի զրոյի» հասնելը, այսինքն՝ միջին և փոքր հեռահարության սովետական և ամերիկյան հրթիռների լրիվ ոչնչացմանն ավելի կարճ ժամկետներում:

Այն, որ ամենատարբեր երկկողմ և բազմակողմ բանակցություններում սովետական ներկայացուցիչները հրաժարվում էին փոխադարձության հիման վրա ինֆորմացիա ներկայացնել բանակցությունների առարկայի վերաբերյալ, առաջացնում էր անվստահություն, կասկածամտություն, ծառայում էր իբրև սնուցիչ միջավայր ամեն տեսակ լուրերի, չարաշահումների համար: Օրինակ, ՍՍՀՄ-ի զինված ուժերի և սպառազինությունների վերաբերյալ պաշտոնական սովետական տվյալների բացակայությունն ահա արդեն մի քանի տասնամյակ շարունակ ճարպկորեն օգտագործվում է մեր երկրի ամեն կարգի հակառակորդների կողմից:

Հիշում եմ, օրինակ, թե ինչպես մի անգամ ամերիկացի իմ գործընկերը ՄԱԿ-ի զինաթափման հանձնաժողովում, որտեղ մեր նախաձեռնությամբ քննարկվում էր ռազմածովային նավատորմերի կրճատման հարցը, դիմեց ինձ, խնդրելով տալ սովետական ռազմածովային նավատորմի թվաքանակը: Այն կապակցությամբ, որ ես այդ մասին ոչ մի տվյալ չունեի, հնարավոր չեղավ կատարել ամերիկացու խնդրանքը: Այդ ժամանակ նա ինձ ցույց տվեց Սովետական Միության բոլոր մարտական նավերի ցուցակը՝ օդալուսանկարումների միջոցով ստացված դրանց լուսանկարներով, որը հրապարակվել էր ամերիկյան հրատարակություններից մեկում, և խնդրեց հաստատել այն: Վերը նշված պատճառով ես չէի կարող ոչ հաստատել, ոչ հերքել այդ նյութերը, որից հետո ամերիկացին հայտարարեց, որ մտադիր չէ քննարկել սպառազինությունների որևէ տեսակի կրճատման հարց՝ առանց նույնիսկ ելակետային տվյալներ ունենալու:

Պետք է խոստովանել նաև, որ Սովետական Միության անցյալ մի շարք արտաքին քաղաքական քայլեր լայն աջակցություն չգտան միջազգային հանրության կողմից: Սովետական զինվորական կոնտինգենտը Աֆղանստան մտցնելը ոչ միայն խիստ քննադատության ենթարկվեց արևմտյան երկրների կողմից, այլև ըմբռնում չգտավ չմիացած և չեզոք պետությունների մեծ մասի կողմից: 1980 թվականից սկսած ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան ամեն տարի ընդունում էր բանաձև, որով ըստ էության հավանություն չէր տրվում Սովետական Միության քայլին:

Լճացման տարիներին լիցքաթափման պրոցեսը, որը նկատելի ազդակ էր ստացել 70-ական թվականների սկզբին, սկսեց աստիճանաբար մարել, հեռանկարային շատ կապերի զարգացումն արևմտաեվրոպական երկրների հետ կանգ առավ: Մեր քաղաքականության առաջնային ուղղությունում անգամ՝ սոցիալիստական երկրների հետ մեր ունեցած հարաբերություններում գոյացան ձևապաշտության ու հանդիսամոլության շերտանստվածքներ. իրավահավասարության, ինքնուրույնության, չմիջամտելու սկզբունքները ներդաշնակորեն չէին կապակցվել սոցիալիստական հասարակության ազգային ձևերի բազմապիսության հետ:

Միջազգային ասպարեզում ցանկացած ակցիան գնահատելիս վճռական նշանակություն ունի դրա արդյունավետությունը, այսինքն, թե որքանով է այն նպաստել պետության միջազգային հեղինակության ամրապնդմանը, նրա արտաքին կապերի ընդլայնմանը: Եթե չափանիշը կիրառելու լինենք Սովետական Միության քայլերի նկատմամբ, ասենք, միջինարևելյան ուղղությամբ, ապա չի կարելի չնկատել, որ նրա



կապերը քննության առարկա ժամանակամիջոցում այդ ռեգիոնի մի շարք պետությունների հետ ըստ էության սահմանափակվեցին, իսկ նրա դերը խաղաղ կարգավորման որոնումների պրոցեսում որոշակի չափով թուլացավ:

Ընդհանուր առմամբ, արգելակման մեխանիզմը լճացման տարիներին գործեց միջազգային ասպարեզում Սովետական Միության գործունեության մեջ ևս: Այսպիսով, ամենատարբեր գործոնների ներազդեցության հետևանքով լարվածությունը միջազգային հարաբերություններում 80-ական թվականների կեսերին հասել էր տագնապալի չափերի:

Այդպիսի պայմաններում Սովետական Միությունում սկսվեց վերակառուցման հեղափոխական պրոցեսը, որն ընդգրկեց նաև արտաքին քաղաքականության ոլորտը: Միջուկատիեզերական դարաշրջանի իրողությունների նկատմամբ նոր արտաքին քաղաքական կոնցեպցիան մշակվեց ՍՄԿԿ XXVII համագումարում: Դրա հիմքում ընկած է ժամանակակից աշխարհի փոխադարձ կապի, փոխադարձ կախման, ամբողջականության մասին դրույթը, չնայած աշխարհի շարունակվող խոր հակասականությանն ու այն կազմող պետությունների արմատական տարբերություններին:

Միջազգային հարաբերությունների այս նոր, որակական տարբերությունը պայմանավորված է տնտեսական կապերի ինտերնացիոնալացմամբ, գիտատեխնիկական հեղափոխության համընդգրկուն բնույթով, ինֆորմացիայի ու հաղորդակցման միջոցների նոր դերով, մոլորակի ռեսուրսների վիճակով, ընդհանուր էկոլոգիական վտանգով և գլոբալ բնույթ կրող սոցիալական, քաղաքական, հումանիտար, տնտեսական և մի շարք այլ պրոբլեմներով: Ժամանակակից միջազգային կյանքի էությունը հասկանալու և նրա պրոբլեմները հաջողությամբ լուծելու համար ոչ պակաս կարևոր նշանակություն ունի այն, որ համակողմանիորեն հաշվի է առնվում այն փաստը, որ համաշխարհային ասպարեզ են դուրս եկել նախկինում մի բուռ իմպերիալիստական տերությունների քաղաքականության օբյեկտ հանդիսացած բազում տասնյակ նոր պետություններ: Անցյալում հաջողվում էր անտեսել փոքր երկրների շահերը, կամքը: Մեր ժամանակում այդպիսի մոտեցումը քաղաքական սնանկացում է սպառնում նրանց, ովքեր կփորձեն դիմել դրան: XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումները սովետական պետության գործունեության բոլոր հարցերի վերաբերյալ քննարկման ու կարևորագույն որոշումների ընդունման սահմանադրական-լիազոր մեխանիզմի ձևավորման մասին ուղղակի առնչություն ունի նաև նրա միջազգային քաղաքականության հետ: Արտաքին քաղաքական խնդիրների ու կոնցեպցիաների, համաշխարհային ասպարեզում կոնկրետ ակցիաների մշակումը պետք է տեղի ունենա բացահայտ, ստեղծագործական քննարկումների ու դիսկուսիաների ընթացքում, ինչպես դա լինում էր մեր պետության գոյության առաջին տարիներին: Հետագայում, ինչպես անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում, այնպես էլ լճացման տարիներին, պետական գործերը վարելու լենինյան այդ նորմերը հաճախ խախտվում էին: Հիշենք, թե սովետական ժողովրդի, կոմունիստական կուսակցության համար ինչպիսի կատարյալ անակնկալ էր չհարձակվելու մասին սովետա-գերմանական պայմանագրի կնքումը 1939 թվականի ամռանը, կամ, ասենք, 1979 թվականի վերջին սովետական զինվորական կոնտինգենտը Աֆղանստան մտցնելու մասին որոշումը:

Սահմանադրական-լիազոր մեխանիզմի ստեղծման մասին XIX կուսկոնֆերանսի որոշումներից բխում է օրենսդրական այնպիսի ընթացակարգ մտցնելու անհրաժեշտությունը, որին համապատասխան սովետական բոլոր գերատեսչություններն ու հիմնարկները, որոնք զբաղվում են արտաքին քաղաքականությամբ, արտասահմանյան երկրների հետ տնտեսական կապերով, ռազմական, ռազմաարդյունաբերական գործունեությամբ, մասնավորապես երկրի ազգային սահմաններից դուրս ռազմական ուժի օգտագործմանը վերաբերող հարցերը լուծելիս պետք է ենթակա լինեն բարձրագույն համաժողովրդական ընտրովի մարմինների վերահսկողությանը:

Վերջին երեք տարուց ավելի ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ում տեղի ունեցող փոփոխությունները, վերակառուցումը, նոր քաղաքական մտածողությունը, հրապարակայնությունը, բացախոսությունը վճռական ազդեցություն են ունեցել սովետական արտաքին քաղաքական ապարատի, սովետական դիվանագիտության գործունեության վրա: XIX կուսկոնֆերանսի որոշումներում նշվեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային գործունեությունը հիմնված է քաղաքական նոր մտածողության վրա: Սովետական դիվանագիտության կարևոր տարբերիչ գիծն է դարձել նրա դինամիզմը: Այն դրսևորվում է թե՛ նրա գործունեության աշխարհագրական ոլորտը ընդլայնել-

…մեջ, թե՝ նրա ակտիվությունը միջազգային հարաբերությունների հումանիտար, էկոլոգիական, սոցիալական, տնտեսական բնագավառների վրա տարածվելու մեջ, որոնք անցյալում, ուղղակի ասենք, եղել են երկրորդ պլանում: Եթե, օրինակ, անցյալում մարդու իրավունքի հարցերը միայն որոշ ալերգիա էին առաջացնում մեր ներկայացուցիչների մեջ, ապա այժմ մենք ունենք թարմ գաղափարների ու մոտեցումների հարուստ կազմ, որոնք թույլ են տալիս այդ հարցերի շուրջը բանավեճերին հաղորդել նորություն, համահնչունություն այսօրվա իրողությունների հետ:

Սովետական դիվանագիտության դինամիզմը նաև այն է, որ նա չի սահմանափակվում այս կամ այն պրոբլեմի լուծման նկատմամբ ունեցած մոտեցումների հռչակմամբ, այլ ընդհանուր մոտեցումները լրացնում է ծավալուն առաջարկությունների ներկայացմամբ: Վերցնենք, օրինակ, Սովետական Միության 1986 թվականի հունվարի 15-ի հայտարարությունն այն մասին, որ ինքը կողմնակից է քիմիական զենքի ու նրա պատրաստման արդյունաբերական բազայի ամենաարագ ու լրիվ ոչնչացման: Հիշում եմ, երբ Ժնևի զինաթափման կոնֆերանսում, որի շրջանակներում բանակցություններ են վարվում զանգվածային ոչնչացման զենքի այդ տեսակի արգելման մասին, սովետական պատվիրակությունը կոնֆերանսի մասնակիցներին տեղյակ պահեց այդ առաջարկության մասին, իմ հասցեին, որպես սովետական պատվիրակության ղեկավարի, սկսեցին հարցեր տեղալ, թե կոնկրետ ի՞նչ է թաքնված մեր հայտարարության հետևում, ինչպե՞ս ենք մենք պատկերացնում արդյունաբերական բազայի ոչնչացումը և այլն: Իսկ արևմտյան պատվիրակություններից թերահավատները համոզում էին հայտնում, որ Սովետական Միությունը դեկլարացիաներից այն կողմ չի գնա, ինչպես քանիցս եղել է անցյալում: Շուտով, սակայն, մեր ընդհանուր հայտարարությունը լրացվեց մի ամբողջ շարք կոնկրետ առաջարկություններով ու ձևակերպումներով, որոնք մեծապես կանխորոշեցին առաջընթացը հիշյալ բանակցություններում:

Սովետական դիվանագիտության մի կարևոր գիծ ևս՝ նրա քաղաքական իրատեսությունը: Այն առաջարկությունները, նախաձեռնությունները, որոնցով նա այժմ հանդես է գալիս, մշակվում են պետությունների խմբերի ու առանձին պետությունների շահերը համակողմանիորեն հաշվի առնելու հիման վրա: Ընդ որում Սովետական Միությունը խստիվ ղեկավարվում է, դժբախտաբար, դեռևս ոչ բոլորի կողմից յուրացված աքսիոմայով, որ չի կարելի սեփական անվտանգությունն ամրապնդել ուրիշների անվտանգության հաշվին կամ ի վնաս դրան:

Մեր դիվանավիտության գործունեության մեջ նորը հրաժարումն է բանակցությունների նկատմամբ «չարչիական» մոտեցումից, երբ պարտնյորին առաջարկվում են անչափ մեծ, նրա համար ակնհայտորեն անընդունելի պայմաններ, որոնք վնաս են հասցնում նրա ազգային անվտանգության շահերին: «Ուզում ես շատ պոկել, շատ պահանջիր»՝ այսպիսին էր այն պոստուլատը, որով ղեկավարվում էին անցյալի բանակցողները: Վերջին տասնամյակների փորձը, միջուկա-տիեզերական դարաշրջանի իրողությունները հստակորեն բացահայտեցին «չարչիական» մոտեցման թերությունները, անարդյունավետությունը: Մտնելով բանակցությունների մեջ, մեր ներկայացուցիչները իրենց դիրքավորումը ձևակերպում են աշխարհի բախտի համար ողջ պատասխանատվությամբ, շահերի հաշվեկշռի հիման վրա, հստակորեն պատկերացնելով բանակցությունների հնարավոր փակուղիների, դրանց ձախողման անմիջական ու երկարաժամկետ հետևանքները:

Սովետական դիվանագիտությունը ձգտում է այն բանին, որ Սովետական Միության բացահայտ ու ազնիվ քաղաքականությունը հասկանալի լինի բոլորի համար: Հենց դրանով էր նա ղեկավարվում, երբ ձեռնարկվեցին միջոցներ, որոնց նպատակն էր ամրապնդել վստահությունը հակահրթիռային պաշտպանության պայմանագրի պահպանման բնագավառում, միջուկային զենքի փորձարկումների արգելման, քիմիական զենքի արգելման բնագավառում և այլն: Բերեմ մի օրինակ: Վստահության մթնոլորտի ստեղծման համար, ինչպես նաև ղեկավարվելով քիմիական զենքի արգելման մասին կոնվենցիայի ամենաարագ կնքման շահերով, սովետական պատվիրակությունը զինաթափման կոնֆերանսում 1987 թվականի աշնանը իր պարտնյորներին հրավիրեց այցելել սովետական Շիխանի ռազմական օբյեկտը՝ ՍՍՀՄ-ի ունեցած քիմիական զենքի տիպային նմուշներին ու դրանց ոչնչացման տեխնոլոգիային ծանոթանալու համար:

Սովետական Միության այդ քայլը հսկայական տպավորություն գործեց մասնակիցների վրա: Արտասահմանյան երկրների շատ դիվանագետներ նախկինում չէին ընդունում այն հնարավորությունը, թե սովետական կառավարությունը կբացի հրա-



պարկային դիտման համար այդ գաղտնի ռազմական օբյեկտը: Չեմ թաքցնում, որ 1986 թվականի ամռանը, երբ քիմիական զենքի արգելման հարցերի վերաբերյալ սովետա-անգլիական կոնսուլտացիաների ընթացքում անգլիացիները Լոնդոնում իմ առջև դրեցին Շիխանիում այդ օբյեկտը այցելելու հնարավորության հարցը, երբ ես այդ մասին զեկուցում էի Մոսկվային, իմ մեջ անգամ մեծ կասկած առաջացավ, թե մենք կկարողանանք դիմել այդ քայլին:

Միջազգային վստահության ամրապնդմանը նպաստող բացախոսության ցուցադրումը եղավ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Ֆ. Կարլուչիի այցը Սովետական Միություն նույն թվականի ամռանը, որի ընթացքում ամերիկացին ներկա գտնվեց տակտիկական զորավարժություններին՝ մարտական հրաձգությամբ, դիտեց մոտոհրաձգային գնդի սպառազինության մեջ եղած մարտական տեխնիկան, ինչպես նաև սովետական մարտական ինքնաթիռների տարբեր տիպերը, դիտեց կործանիչների ցուցադրական թռիչքները, այցելել Սևծովյան նավատորմի գլխավոր բազան:

Վստահության միջոցառումների բնագավառում Սովետական Միության ձեռնարկած բոլոր այս կոնկրետ քայլերը դրական գնահատականի արժանացան համաշխարհային հանրության կողմից և թույլ տվեցին առաջ շարժել շատ բանակցություններ:

Ռազմական լիցքաթափման հարցերի վերաբերյալ ներկայումս վարվող բանակցություններին ուժգին զարկ տվեց սովետական նոր մոտեցումը վերահսկողության հարցերին: Ելնելով այն բանից, որ արդի աշխարհի ռեալությունն այնպիսին է, որ մարդկության գոյատևումը, յուրաքանչյուր երկրի անվտանգություն կարող է ապահովվել ոչ թե ռազմական, այլ քաղաքական միջոցներով, որոնցից գլխավորը սպառազինությունների սահմանափակումն է, զինաթափումը, Սովետական Միությունը սկսել է հանդես վալ որպես ամենաներգործուն ստուգման կողմնակից, որը հիմնված լինի ինչպես ազգային տեխնիկական, այնպես էլ միջազգային ընթացակարգերի օգտագործման վրա, ներառյալ պարտադիր տեսչությունները տեղերում: Սովետական Միության համար գոյություն չունի վերահսկողության հետ կապված քաղաքական բնույթի որևէ դժվարություն:

Սովետական դիվանագիտության գործունեության մեջ ավելի ու ավելի նկատելի են դառնում այն գծերը, որոնք ներհատուկ էին նրան այն ժամանակ, երբ սովետական պետության ղեկի մոտ կանգնած էր Վ. Ի. Լենինը: Նորովի ու ավելի ու ավելի հստակ սկսեց երևան գալ նրա ժողովրդական բնույթը: Վերածնելով լենինյան ժամանակների ավանդույթները, վերջին տարիներին սկսել է ամրապնդվել տեսության ու պրակտիկայի փոխգործողությունը: Այդ բնագավառի վերջին օրինակն է ՍՍՀՄ արտգործմինիստրության գիտատեսական կոնֆերանսը, «XIX համամիութենական կոնֆերանսը. արտաքին քաղաքականություն և դիվանագիտություն» թեմայով, որին մասնակցեցին գիտության ու տեխնիկայի աչքի ընկնող գործիչներ, դիվանագետներ, զինվորականներ, լրագրողներ:

Ամրապնդվում է կապը ՍՍՀՄ դիվանագիտական գերատեսչության և զանազան հասարակական կազմակերպությունների՝ Խաղաղության պաշտպանության սովետական կոմիտեի, ՄԱԿ-ի աջակցության ասոցիացիայի, Խաղաղության ֆոնդի, «Աշխարհի բժիշկները հանուն միջուկային պատերազմի կանխման» կազմակերպության կոմիտեի հետ և այլն: Ժողովրդական դիվանագիտությունը գործում է պրոֆեսիոնալ դիվանագիտության հետ ձեռք-ձեռքի տված:

Վերակառուցումը, մեր երկրի ներքին կյանքում և քաղաքական մտածողության մեջ տեղի ունեցող փոփոխությունները, որոնք ազդել են նաև նրա արտաքին քաղաքականության վրա, էապես խարխլեցին առճակատման ու դիմակայության վրա հիմնված միջազգային հարաբերությունների ողջ համակարգը: Դրանք եղան գլխավոր արգելքը «սառը պատերազմի» հետագա բորբոքման ճանապարհին, վերջին մի քանի տարում համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերի վճռական գործոն:

Սովետական Միությունում տեղի ունեցող հեղափոխական պրոցեսի պատմական ամբողջ նշանակությամբ հանդերձ միջազգային կլիմայի առողջացման համար միայն նրա ջանքերը բավական չեն, եթե մյուս կողմը ևս, ամենից առաջ ԱՄՆ-ը, չփորձի հրաժարվել անցյալի ստերեոտիպերից, աշխարհին նայել անկանխակալորեն, զգաստամտորեն, ռեալ կերպով գնահատել Սովետական Միության, սոցիալիզմի աշխարհի նկատմամբ կույր թշնամության քաղաքականության ինքնակործան հետևանքները:

Երկու գործոնների՝ մեր երկրում տեղի ունեցող վերակառուցման և միջազգային լարվածության հետագա սրման հսկայական վտանգի գիտակցման փոխգործողությունը որոշեց համաշխարհային քաղաքականության զարգացման նոր փուլը 80-ական թվականների կեսերից: Դրանում, ինչպես և ամբողջ հետպատերազմյան ժամանակաշրջանի ընթացքում, նկատելի տեղ են գրավում հարաբերությունները ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև:

Պրեզիդենտ Ռեյգանի հրաժարումը Սովետական Միությանը կպցրած իր «չարիքի կայսրություն» պիտակից նույնպես, ավելի շուտ, ինչպես մեր երկրում տեղի ունեցող վերակառուցման, այնպես էլ Վաշինգտոնի ուժային քաղաքականության անհեռանկարայնության հետևանքն էր:

Սովետա-ամերիկյան հարաբերությունները արդի համաշխարհային քաղաքականության շատ բարդ ու բացառիկ կարևոր գումարելի է: Ցանկացած, նույնիսկ աննշան տատանումները ամենահզոր պետությունների հարաբերություններում անհապաղ արտացոլվում են միջազգային կապերի ամբողջ բազմապիսի արխիտեկտոնիկայի վրա: Զգալի չափով դրանցից է կախված գլոբալ ու ռեգիոնալ շատ պրոբլեմների լուծման հեռանկարը:

Վերջերս ինձ վիճակվեց մասնակցել քաղաքական գործիչների, դիվանագետների, գիտնականների մի միջազգային հանդիպման, որ ամերիկյան «Ստենլիի ֆոնդը» կազմակերպել էր Հարավսլավիայում: Հանդիպման թեման էր ՄԱԿ-ի գործունեության քննարկումը 90-ական թվականներին: Մասնակիցները տարբեր դատողություններ էին հայտնում այդ մասին՝ ոմանց այդ կազմակերպության ապագան ներկայանում էր վարդագույն գույներով, մյուսներին, ընդհակառակն, մռայլ գույներով: Մի բանում, սակայն, բոլորն էլ համամիտ էին, որ այն վճռական չափով կորոշվի ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների բնույթով: Եվ դա միանգամայն արդարացի է, թեև լուրջ սխալ կլիներ լիովին հաշվի չառնել ժամանակակից միջազգային կյանքի բազմազանությունը, պլյուրալիզմը:

Նկատի ունենալով սովետա-ամերիկյան հարաբերությունների առանձնահատուկ դերը, սովետական ղեկավարությունը հետևողականորեն ու առողջ բանականության նկատառումներից ունեցած հավատով մի քանի տարի սրանից առաջ ձեռնամուխ եղավ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ստճակատման հարաբերություններում շրջադարձի հասնելու անհնարին թվացող գործին: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի և ԱՄՆ-ի պրեզիդենտի Մոսկվայի, թվով չորրորդ, հանդիպումը, կարծես հավաստեց այն մեծ ուղին, որ անցել էին այդ տարիներին: «Ամենագլխավորը (հանդիպման արդյունքը),— ընդգծեց Մ. Ս. Գորբաչովը,— այն երկխոսության շարունակումն է, որն այժմ ընդգրկում է համաշխարհային քաղաքականության, երկկողմ հարաբերությունների բոլոր հանգուցային պրոբլեմները»: Բավական է ասել, որ անցած երեք տարում երկու երկրների միջև ստորագրվել է մոտ հիսուն տարբեր համաձայնություն՝ տարբեր բնագավառներում:

Մոսկվայում քննարկված հարցերի լայն շրջանից այնուհանդերձ կցանկանայի առանձնացնել սպառազինությունների սահմանափակման, զինաթափման պրոբլեմը: Այն դարձավ սովետա-ամերիկյան երկխոսության հիմնական թեման ընդհանրապես: Միջին և փոքր հեռահարության հրթիռների ոչնչացման մասին պայմանագրի վերաբերյալ վավերացման գրերի փոխանակումից բացի Մոսկվայի հանդիպման ընթացքում հաջողվեց վերացնել շատ խոչընդոտներ ստրատեգիական միջուկային սպառազինությունների 50 տոկոսով կրճատման, միջուկային զենքի փորձարկումների լրիվ արգելման, քիմիական զենքի արգելման ու ոչնչացման մասին համաձայնությունների մշակման ճանապարհին, բովանդակալից խոսակցություն սկսել սովորական սպառազինությունների ու զինված ուժերի կրճատման մասին: Մի խոսքով, տեղի էր ունենում սովետա-ամերիկյան հարաբերությունների ապառազմականացման ակտիվ պրոցես, որը գործնականորեն մարմնավորվում է մեր օրերում՝ միջին և փոքր հեռահարության հրթիռների վերաբերյալ պայմանագրին համապատասխան սովետական և ամերիկյան հրթիռների ոչնչացման համար ՍՍՀՄ-ում և ԱՄՆում կատարվող ընթացակարգերի մեջ:

Սովետա-ամերիկյան հարաբերությունների փոխադրումը նորմալ հունի մեջ, որի դրսևորումներից մեկը եղավ նաև Մոսկվայի հանդիպումը, պետք է գնահատել որպես առողջ բանականության ու իրատեսության հաղթանակ Կրեմլի և Սպիտակ տան քաղաքականության մեջ: Հարաբերությունների նորմալացումը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև համապատասխանում է թե՛ սովետական ու ամերիկյան ժողովուրդների շահերին, թե՛ ամբողջ համաշխարհային հանրության շահերին: Այն տրամաբանորեն բխում է Սովետական Միության արտաքին քաղաքական նոր կոնցեպցիայից, նոր մտածողությունից, որի կարևորագույն տարրերն են համընդհանուր, հուսալի անվտանգության ապահովումը և մինչև 2000 թվականը միջուկային զենքի փուլ առ փուլ ոչնչացումը:



Սովետական արտաքին քաղաքականությունն արդեն շատ բան է արել, որպեսզի շարժումը դեպի համընդհանուր անվտանգություն ընթանա միաժամանակ բոլոր ռազմական, քաղաքական, տնտեսական, հումանիտար, էկոլոգիական, ուղղություններով, առանց այդ ճանապարհին ամեն կարգի կապակցումների ու նախնական պայմանների արհեստական խոչընդոտներ ստեղծելու: Դա արտացոլվեց ռազմական լիցքաթափման հարցերի վերաբերյալ մի շարք համաձայնություններում, հումանիտար հարցերի վերաբերյալ պայմանավորվածություններում, մարդկանց միջև կոնտակտների զգալի ընդլայնման, տնտեսական ու առևտրական կապերի կատարելագործման մեջ, վերջապես, առանձին ռեգիոնալ կոնֆլիկտների կարգավորման մեջ:

Միջազգային անվտանգության համապարփակ համակարգի մշակման գործում ծանրակշիռ ավանդ հանդիսացավ Դելիի դեկլարացիայի ստորագրումը 1986 թվականին, որի մեջ միջուկազերծ աշխարհի կառուցման նկատմամբ սովետական մոտեցումները շաղկապվում են Հնդկաստանի և չմիանալու շարժումը ներկայացնող միլիարդավոր մարդկանց մոտեցման հետ: Միջազգային անվտանգության համապարփակ համակարգի հարցի վերաբերյալ բանաձևի ընդունումը ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի 41-րդ և 42-րդ նստաշրջաններում նույնպես վկայում է այն մասին, որ ժողովրդականություն է վայելում մոլորակի բախտի համար համայն մարդկության պատասխանատվության գաղափարը:

Առաջին քայլերն են արվել նաև միջուկային զինաթափման ուղղությամբ: 1987 թվականի դեկտեմբերին Վաշինգտոնում ստորագրված պայմանագիրը միջին ու փոքր հեռահարության հրթիռների մասին պետք է դիտել մինչև ընթացիկ դարի վերջը միջուկային զենքը փուլ առ փուլ ոչնչացնելու վերաբերյալ 1986 թվականի հունվարի 15-ի հայտարարությամբ հռչակված սովետական ծրագրի համատեքստում:

Արդի միջազգային հարաբերությունների դրական փոփոխություններին կատարյալ հիմքով կարելի է դասել նաև համաեվրոպական պրոցեսի աշխուժացումը: Լավ է գործում Եվրոպայում վստահության ու անվտանգության միջոցների պահպանման նկատմամբ վերահսկողության մեխանիզմը, որն ստեղծվել է Ստոկհոլմի 1986 թվականի կոնֆերանսի փաստաթղթին համապատասխան: Դրա հիման վրա տեղերում անցկացվող տեսչությունները, վստահություն ստեղծելով պարտավորությունների կատարման նկատմամբ, ռեալ ավանդ են ներդնում Եվրոպայում վստահության ամրապնդման գործում: Հեռանկարներ են բացվում Եվրոպայում վստահության, անվտանգության ամրապնդման և զինաթափման միջոցների վերաբերյալ կոնֆերանսի վերսկսման համար:

Միջազգային իրադրության առողջացման, իրենց մեջ համընդհանուր անվտանգության համար սպառնալիք պարունակող ռեգիոնալ կոնֆլիկտների քաղաքական կարգավորման գործում խոշոր ուղենիշ եղան Ժնևի 1988 թվականի համաձայնությունները և Աֆղանստանից սովետական զինվորական կոնտինգենտի դուրս բերման սկսված պրոցեսը: Այդ իրադարձության նշանակությունը ոչ միայն այն է, որ այն նշանակում է բազմամյա արյունահեղության դադարեցում, այլև այն, որ դա ցույց է տալիս այն անելանելի իրավիճակներից խելամտորեն դուրս գալու ուղին, որոնց մեջ ներքաշված են եղել ռեգիոնալ շատ կոնֆլիկտների մասնակիցներ: Պատահական չէ, որ մեր օրերում տեղի են ունենում Հարավարևելյան Ասիայի, Աֆրիկայի հարավի և մեր մոլորակի մյուս «տաք կետերի» կոնֆլիկտների քաղաքական կարգավորման ակտիվ որոնումներ:

Իր արտաքին քաղաքական գործունեության մեջ Սովետական Միությունը ավելի ու ավելի է հաշվի առնում արդի աշխարհի պլյուրալիզմը՝ դա ևս նոր նշան է: Պատշաճը հատուցելով սովետա-ամերիկյան հարաբերություններին, մեր արտաքին քաղաքականությունը դրանցով չի ներփակվում: Այն ելնում է նրանից, որ համընդհանուր անվտանգության հուսալի համակարգը չի կարող մեկ-երկու պետության ընտեղծագործության արդյունք լինել: Ամեն մի ժողովուրդ ունի իր հայացքները, պրոբլեմները, շահերը: Չի կարելի անվտանգ աշխարհ կառուցել՝ առանց դրանք համակողմանիորեն հաշվի առնելու: Աշխարհը բազմադեմ է, և նրա վրա հարկավոր է նայել ոչ թե սովետա-ամերիկյան հարաբերությունների պրիզմայով, այլ այդ աշխարհում ապրող ամեն մի ժողովրդի յուրահատկությունը, ավանդույթները, պատմությունը հասկանալով, հարգելով ու հաշվի առնելով: Հիշում եմ, թե ինչպես ՄԱԿ-ի

գլխավոր ասամբլեայի նստաշրջաններից մեկում աֆրիկյան մի երկրի ներկայացուցիչ զայրույթով մերժեց ժողովուրդների բաժանումը մեծ ու փոքրերի, հայտարարելով, որ գոյություն ունեն միայն մեծ կամ փոքր թվաքանակով ժողովուրդներ: Արդարացի՜ դատողություն:

Իսկ ինչպիսի՞ն են միջազգային կյանքի զարգացման վերջին մի քանի տարվա արդյունքները: Մենք կարծում ենք, որ դրանցից ամենագլխավորը պատերազմի սպառնալիքի թուլացումն է: Միջուկային «վերջին դատաստանը» արդեն չի ներկայանում որպես այսրոպեական վտանգ, թեև նրա կործանարար ուրվականը դեռևս շարունակում է թևածել մարդկության գլխի վերև:

Կարելի է նաև բավական մեծ վստահությամբ պնդել, որ ավարտվել է հետպատերազմյան տարիների «սառը պատերազմի» երկրորդ ժամանակաշրջանը, որի սկիզբը վերաբերում է 70-ական թվականների վերջին— 80-ական թվականների սկզբին: Միջազգային իրադրության սկսված առողջացումը հնարավորություն տվեց լուծելու մի ամբողջ շարք քաղաքական սուր պրոբլեմներ: Եվ ընդհակառակն, սուր անկյունների վերացումը նպաստեց վստահության աճին, միջազգային համագործակցության զարգացմանը: Հաստատվեց մի աքսիոմա՝ լիցքաթափման, փոխադարձ վստահության հունում զգալիորեն ավելի հեշտ է գտնել ամենաբարդ պրոբլեմների, ամենախճճված հանգույցների լուծումներ: Իսկ քաղաքական անգիտության մեջ, իսկ առավել ևս օտարացածության, կասկածամտության և թշնամության մթնոլորտում մի վիճելի հարցին ավելանում է մեկ ուրիշը, մի վիրավորանքը ծնում է մեկ ուրիշը և ցանկացած պրոբլեմը, ձնագնդի նման իր վրա է կուտակում անլուծելի գումարելիներ: Դա, ինչպես ցույց տվեց կյանքը, վերաբերում է միջազգային հարաբերություններին, դա արդարացիորեն կարող է կիրառվել նաև այնպիսի մի դյուրազգաց ոլորտի նկատմամբ, ինչպիսիք են ազգամիջյան հարաբերությունները:

Եվ վերջինը: Սովետական Միության միջազգային դրությունը բարելավվել է, ըստ որում ոչ թե ռազմական ուժի մեծացման հաշվին, այլ մեր երկրի նկատմամբ վստահության բարձրացման հաշվին: Վերակառուցման քաղաքականությունը նրա բոլոր ուղղություններով ու դրսևորումներով գտնվում է համաշխարհային հանրության ուշադրության կենտրոնում:

Սա ակնառու փաստ է: Այդ բանը ես զգացի նաև սեփական փորձով, վերջին ժամանակներս մասնակցելով կառավարական և ոչ կառավարական կազմակերպությունների ներկայացուցիչների զանազան կոնֆերանսներում և հանդիպումներում: Այդ հանդիպումների սովետական մասնակիցներին տասնյակ, հարյուրավոր հարցեր են տալիս նրանց արտասահմանյան գործընկերները: Նրանք ցանկանում են իմանալ բոլոր կարգի՝ սոցիալական, տնտեսական, իրավական հարցերի լուծման մեր մեթոդների, մոտեցումների, ձևերի մասին: Նրանք առանձնահատուկ հետաքրքրություն են ցուցաբերում ազգամիջյան հարաբերությունների լուծման նկատմամբ մեր ունեցած մոտեցումներին, դրանք պրոյեկցելով մեր ամբողջ միջազգային քաղաքականության վրա: Դրանց արդարացի, դեմոկրատական լուծումը ամրապնդում է մեր պետության հեղինակությունը, վստահությունը նրա նկատմամբ: Իսկ դա իր հերթին աջակցում է միջազգային զարգացման վրա Սովետական Միության ազդեցության աճին:

Թարմ հողմեր են փչում մեր մոլորակի վրայով: Դրանք քշում տանում են հին սխեմաներն ու ստերեոտիպերը և բարենպաստ հող ստեղծում մարդկանց, ժողովուրդների, պետությունների նոր, առողջ, բարի հարաբերությունների ծիլերի համար:

---

*Հանձնված է շարվածքի՝ 02. 09. 88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 20. 10. 88 թ.: ՎՖ 03377: Ֆորմատ՝ $70\times108\,^1/_{16}$: Տպագրությունը՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 15632: Պատվեր՝ 1474:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*